# ՍՈՎՈՐԻ՛Ր

— Ափսո՜ս, ես ուշ եմ ծնվել։ Ափսո՜ս, ամեն ինչ արդեն արված է...

Այսպես էր ասում ռուս նշանավոր երկրաբան ու աշխարհագետ Վ. Օբրուչևը, երբ ձեզ նման պատանի էր։ Նա որոշել էր ճանապարհորդ դառնալ, բայց շատ էր վշտանում, որ Ամերիկան առանց իրեն էին հայտնագործել, առանց իրեն էին կատարվել շուրջերկրյա ճանապարհորդությունները, ուսումնասիրվել ցամաքներն ու օվկիանոսները։

Իսկ երբ մեծացավ, տեսավ, որ մարդկությունը դեռ շրջապատված է անհայտության օվկիանով։ Տեսավ, որ մարդիկ ինչքան շատ բան են իմանում, այնքան ավելի նորանոր գաղտնիքներ ու անելիքներ են կանգնում նրանց առաջ։

Այսօր մեր պատանիները կարող են համակվել անսահման ոգևորությամբ։ Սովետական գիտնականները բացել են տիեզերական անհուն տարածությունների դռները։ Նրանք կատարում են չտեսնված սխ-

№ 12 1959 թ.
ԴԵԿՏԵՄԲԵՐ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

րագործություններ, որոնք հրաշքների են նման: Մեր գիտնականները բաց թողեցին երկրի երեք արբանյակ, դեպի միջմոլորակային տարածությունների խորքերն ուղարկեցին տիեզերական հրթիռներ. նրանք վիմպել իջեցրին Լուսնի վրա, նկարահանեցին Լուսնի մյուս, անտեսանելի երեսը:

Սիրելի պիոներներ, ուրեմն դուք Օբրուչևի նման վշտանալու հիմք չունեք. ձեզ համար դեռ շա՜տ, շա՜տ անելիքներ են մնում:

Դեռ Լուսինը, Մարսն ու Վեներան սպասում են իրենց Կոլումբոսներին ու Պրժեվալսկիներին:

Դեռ պետք է տիեզերքի անսահմանու-

# ԵՐԱԶԻ՛Ր

թյուններից տարածություններ նվաճել մարդկության համար:

Հեռու չեն այն ժամանակները, երբ մարդիկ ոտք կդնեն Լուսնի, Մարսի ու Վեներայի վրա:

Եվ եթե այսօր դուք սովորում եք միայն երկրի աշխարհագրությունը, մոտ ապագայում ավելի փոքրիկներին կվիճակվի սովորելու նաև առնվազն այդ երեք մոլորակների աշխարհագրությունը:

Բայց դեռ շատ բան կա անելու նաև երկրի վրա, ուր գտնվում է մեր սիրելի Հայրենիքը: Պետք է ջրացվեն անապատներն ու տայգաները, պետք է տաքացվի հյուսիսային լայնությունների կլիման, հալեցվեն Սառուցյալ օվկիանոսի սառույցները և այլն և այլն:

Աշխարհագրությունը այն առարկան է, որը պատանեկան վառ երևակայությունը լեռների ձյունազարդ գագաթներից տանում է դեպի օվկիանոսների անհատակ խորքերը, ավազապատ անապատներից դեպի մշտադալար, անթառամ արևադարձային անտառները, ուր վխտում են փղերն ու վագրերը:

Աշխարհագրությունը մարդկանց մղում է ճանապարհորդությունների, հայտնագործությունների, սխրագործությունների:

Ուրեմն երազի՛ր, խիզախի՛ր, սիրի՛ր աշխատանքը, կոփիր կամքդ, պատրաստ եղիր սխրագործությունների՝ քո հայրենիքին և

# ԽԻԶԱԽԻ՛Ր

ամբողջ մարդկությանը ծառայելու համար:

Մեր ամսագրի այս համարը ամբողջովին նվիրվում է աշխարհագրությանը:





# ՀԱՅԱՍՏԱՆԻ բուսական և կենդանական ԱՇԽԱՐՀԸ

ԱՐԱՄ ՕՀԱՆՅԱՆ
(Աշխարհագրական գիտությունների թեկնածու, դոցենտ)

Պատանի ընթերցող, եկեք միասին դիտենք Հայաստանի բազմազան դաշտերը, խոտավետ տափաստանները, լեռնային անտառներն ու ալպյան մարգագետինները: Տեսնենք նրանց փարթամ բուսականությունը, շնչենք թարմ օդը:

Ահա նաև ժողովրդի պատմական օրրանը՝ հրաշալավոր Արարատյան դաշտը: Արևաշող այս դաշտում չորային հողերն ունեն կիսաանապատային բուսականություն: Այստեղ աճում են չորասեր բույսեր՝ ուղտափուշ, օշինդր, շոռան, սպառնախոտ ու փշախոտեր, մացառներ ու թփուտներ: Հազարամյա բնությունը բույսերին առիթել է հարմարվել արևի խանձող ճառագայթներին: Բույսերն այստեղ ունեն նեղլիկ տերևներ, որ քիչ ջուր գոլորշիացնեն: Նրանց երկար արմատները խրվում են խոր գետնի մեջ, որ ապահովաբար ծծեն խոնավություն:

Ամառվա կեսերին Արարատյան դաշտի բնական բուսածածկը դեղնում է, թառամում: Իսկ ուշ աշնանը, երբ ծաղկում է օշինդրը, Արարատյան գոգավորության լանջերը նորից ծածկվում են ծիրանագույն ծաղիկներով:

Ոռոգման շնորհիվ Արարատյան դաշտը պատված է ջրանցքների խիտ ցանցով: Ահա այստեղ կիսաանապատային բուսածածկը փոխվում է: Փիրուզ առուների ջրերի վրա ուռենիները կախել են իրենց դալար ճյուղերը: Թվում է, թե ծամարձակ աղջիկներ են նայում հստակ ջրերի հայելուն: Այգիների բարդիները միշտ օրորում են իրենց կատարներին թառած [illegible] արագիլներին:

Բամբակենին խմելով Արաքսի պղտոր ջուրը, բացում է իր սպիտակափափուկ կնգուղները, խաղողի բազմերանգ ողկույզները նազանքով թաքնվում են վազերի լայն տերևների տակ: Բերքի ծանրությունից ճկակոր են լինում դեղձենին ու ծիրանի ծառը: Իսկ արծաթափայլ փշատենին հարսի պես զուգվում, անուշ բուրմունք է տարածում:

Բոստաններում ու բանջարանոցներում մեղրածոր ձմերուկներն են ոսկում, աճում են վարունգ, պղպեղ ու պամիդոր, սմբուկ, թարխուն ու կոտեմ:

Այլ է Հայաստանի բուսական աշխարհում ամենամեծ տեղ բռնող լեռնային տափաստանների՝ Շիրակի, Լոռու, Ապարանի լեռնաշղթաների և Սևանի գոգավորության բուսածածկը: Այստեղ շատ տարածված են փետրախոտերը, ինչպես նաև շյուղախոտերը, ամբուլները, վայրի հացազգի բույսերը, թիթեռնածաղիկները, փիփերուկը, բազրածաղիկը և բազմաթիվ այլ խոտաբույսեր:

Հայաստանի լեռնային տափաստաններում գարունը համատարած կանաչ խոտածածկ կամ ներկված հազարում՝ երանգավորվող գույներով:

Տափաստանային բուսածածկը ամառը չի թոշնում:

Լուսառատ և ջրանցքներով ոռոգվող տափաստանները հանդիսանում են Հայաստանի ցորենի, գարու, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի ու ծխախոտի շրջանները:

Ծանոթացեք մեր հանրապետության Կիրովական, Դիլիջան, Իջևան, Ծաղկաձոր, նմանվեք Հայաստանի լեռնային անտառների չքնաղ աշխարհը: Բուսական աշխարհում կա՛ ամբողջ ամեն մի գեղեցիկ բնաշխարհ, բան լեռնային, գանձերի անտառ:

Կիսաանապատներում ապրում են նաև դեղնափորիկ մողեսներ ու թունավոր օձեր, վխտում են բազմաթիվ միջատներ: Նախալեռների բլրաձևերի վրա արածում են վայրի ոչխարներ ու բարայծեր:

Այլ է Հայաստանի խոտավետ լեռնային տափաստանների՝ Շիրակի, Ապարանի, Լոռու սարահարթի կենդանական աշխարհը: Այստեղ փափուկ հողում որջեր փորող կրծողների թագավորությունն է: Նստիր մի քարի վրա և դիտիր շուրջդ: Առանց երկար սպասելու կտեսնես իրենց որջերի մոտ վազվզող երկարապոչ ու բեղավոր մկներ, առնետներ, դաշտամկներ, ճագարամկներ, չալիկ խլուրդներ, համստերներ, որոնք մեծ վնաս են տալիս արտերին ու բանջարանոցներին:

Լեռնային տափաստաններում շատ կան նաև ճնճղուկներ, բազեներ, կաքավներ, լորեր և այլ թռչուններ: Լեռնային տափաստանները միշտ այցելում են գայլերն ու աղվեսները:

Երբ տափաստաններից բարձրանում ենք դեպի լեռնային մարգագետինները և գնում դեպի հավերժական ձյան սահմանը, կենդանական աշխարհը աղքատանում է:

Բարձր լեռնագագաթներում ամենից շատ լինում են հայկական վայրի ոչխարներն ու միրուքավոր բարայծերը: Նրանք սիրում են կանգնել բարձր ժայռերի կատարներին ու նայել հեռու, ներքևում մշուշների մեջ կորած սարերին ու դաշտերին:

Բարձր լեռնային մարգագետինների ամենահասարակ կենդանին լեռնային մուկն է, որն իր կյանքի կեսն անց է կացնում հավերժական ձյան տակ: Այստեղ կապույտ երկնքում, ամպերից էլ վեր, հանդիսավոր սավառնում են լեռնային անգղները, արքայական արծիվներն ու լեռնահավերը:

Լեռնային մարգագետիններում այնքան շատ են ալպյան գունագեղ թիթեռները, որ երբեմն չես տարբերում ո՞րն է ծաղիկ, որը՝ թիթեռ:

Հայաստանի կենդանական աշխարհը շատ ավելի հարուստ է Իջևանի, Շամշադինի, Զանգեզուրի անտառապատ շրջաններում: Այստեղ արջերը, գայլերը, փորսուղները, աղվեսները, լուսանները, վարազները, վայրի կատուները և անգամ ընձառյուծը, որը՝ գիշերվա խավարում, որը՝ ցերեկով, անտառի թավուտներում դարան մտած սպասում են իրենց զոհերին՝ այծյամներին, կխտարներին, պախրաներին, վայրի ոչխարներին, նապաստակներին:

Ծառերի տակ դանդաղ քայլում են կրիաները: Գիշերը ոզնիները դուրս են գալիս որսի: Ծառերի սաղարթներում թռչկոտում ու ծլվլում են ծտերը, ծղրտում են ծղրիդները: Փայտփորիկը կտկտացնում է, կկուն անդադար կանչում՝ կու՜-կու՜: Գիշերային լռության մեջ լսվում է չարագուշակ բուի ողբալի ճիչը: Հսկա արծիվները հպարտ թառում են սրածայր ժայռերին ու գիշատիչ հայացքով որս որոնում:

Կապուտականաչ Սևանա լիճն էլ իրեն հատուկ կենդանական աշխարհն ունի: Նրա վճիտ ջրերում լողում են հռչակավոր իշխան, ինչպես նաև կողակ, բախտակ, սիգ ու սազան ձկները: Սևանի ափերին և ափամերձ ժայռերում բույն են դնում վայրի սագերն ու բադերը, ջրածիծերը, ճայերը, ջրագռավներն ու սև փարփառները:

Սակայն Հայաստանի կենդանական աշխարհը ոչ միայն խնամքով պահպանվում է, այլև հարստացվում է ուրիշ տեղերից բերված կենդանիներով, գազաններով ու թռչուններով:

Այդ լճի ափերին բազմացվում է թանկագին մորթի ունեցող կուղբը, Խոսրովի անտառում՝ Ուսսուրիական բծավոր եղջերուն, Զանգեզուրի անտառներում՝ փասիանը, Կիրովականի շրջանում՝ ջրարջը և այլն:




## Ո՞Վ Է ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ «ԳԵՈԳՐԱՖԻԱ» ԲԱՌԸ

Աշխարհագրությունը, աշխարհի շատ ժողովուրդներ, որոնց թվում և ռուսները, անվանում են գեոգրաֆիա:

Առաջին անգամ «Գեոգրաֆիա» բառն օգտագործել է հույն մեծ աշխարհագետ, աստղագետ, երկրաչափ, փիլիսոփա և գրող Էրատոսթենեսը: Նա ապրել է Հյուսիսային Աֆրիկայի Կիրենաիկա հունական գաղութում, մեր թվարկությունից առաջ 276—194 թվականներին: Լինելով բազմակողմանի ընդունակությունների տեր մարդ, նա շատ է աշխատել հռչակավոր Ալեքսան-



Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ

Ես ու Յասին Ռուշենյը պատրաստվում էինք որսի գնալ: Պատանի Օլչանը եկավ մեզ մոտ:

— Երկու զատարկ չէք վերցրիք, Յաս, — ասաց նա:

— Եվ ուրիշ ոչի՞նչ...

— Ուրիշ ոչինչ: Այս անգամ որսն անելու ենք շներով:

— Ի՞նչ է, — բարկացած ասացի ես, — ծաղրո՞ւմ ես:

Նա անմիջապես լրջացավ և նույնիսկ գունատվեց:

— Ինչ ես ասում, Յաս: Այդ անհնարին է. ի՞նչն է ստիպում ձեզ այդպես մտածել իմ մասին: Եթե ես անզգուշաբար վշտացրի ձեզ, ներեցեք, խնդրում եմ:

— Շներով ենք որսի գնում, այդպես չէ՞:

— Այո, Յաս: Շատ սովորական շներով, գիտե՞ս, օղու շներով: Դուք կարծում եք, թե ես ծաղրելու համա՞ր եմ ասում: Ո՛չ, Յաս, ո՛չ... Ես մտադիր եմ ձեզ ցույց տալ, թե ինչպես էին մի ժամանակ այս կողմերում կարասներ որսում: Հիմա այդպիսի որսն արգելված է: Ներեցեք, եթե տրամադիր չեք, չգնանք:

Ձմեռ էր, սաստ ձմեռ: Ոչինչ չէր հիշեցնում, թե Նոյեմա գետի ափերին երբեմն ամառ է եղել, որ ափաշարայինները, կաղամախու կարմիր ճաղպաքաղերի թփուտները, ջրակեղևով ու ճահճային կանաչ սփյուռների նման ծփացել են նրա ափերին: Հեռվում, մամերի տակ անշարժ ու մռայլ շարված էին թախծոտ կեչիները ու փշատերև ծառերը: Ձյան սպիտակ բուրդերը գագաթներին՝ նրանք նիրհում էին այդպես սառնամանիքի մեջ: Լռություն, սառը լռություն էր մեր շուրջը: Երբեմն միայն ճռռում էր ճյուղ կամ երևում էր արևի սպիտակավուն՝ անդույն, սառն ու անտարբեր, և նորից կորչում լեռների մառախլապատ մշուշում: Քայլում էինք գագաթների արահետներով: Դեկտեմբեր ամիսն էր, ծայրագույն հյուսիսի ամենացուրտ ամիսներից մեկը, բայց մենք չէինք մրսում, այլ տաքչում էինք, կարծես փայլատում էին մեր վերջավորությունները:

— Հանեք ձեր ձեռնոցները, Յաս, — առանց ետ նայելու ասաց պատանի Օլչանը, — ձյուն վերցրեք և ձեռքերդ շփեք, շփե՛ք մինչև կարմրեն:

Երբ մենք այդպես արինք և ձեռնոցները նորից հագանք, նա սկսեց վազել:

Մենք էլ վազեցինք:

— Օձիքները բացեք:

Մենք այդ մասին գիտեինք, գիտեինք, որ սառցող մարդը չի մրսում, սկսում է շոգել: Ես ավելի լավ գիտեի, որովհետև մի անգամ արդեն ցրտահարվել էի:

... Դա պատահեց երկու տարի առաջ, դեկտեմբերի վերջերին: Այդ օրը սարսափելի սառնամանիք էր, երկինքը լիքն էր սառած, անթարթ աստղերով: Թռչունները պատսպարվել էին ձյան տակ, միայն փոքրիկ նապաստակն էր, որ հանգիստ չա-




## ՏՈՒՊԱՐՆԵՐ

Մեր օրերում մարդակերներ հազվադեպ են հանդիպում: Այդ պատճառով էլ երբ մենք իմացանք, որ Ամազոնկայի Բրանկո գետի շրջանում բնակվող տուպարների ցեղը օգտվում է կաննիբալների* փառքով, ցանկացանք նրանց հետ ծանոթանալ ավելի մոտիկից: Սակայն դա հեշտ չէր: Ոչ ոք չէր համաձայնվում մեր ուղեկիցը լինել: Վերջապես մեզ հաջողվեց հասնել տուպարների ամենամոտ հարևաններին՝ Արիկոպոներին:

Արիկոպոն երկրագնդի ամենափոքրաթիվ ժողովուրդն է, որն ունի ընդամենը 14 մարդ, 5 տղամարդ, 4 կին և 5 երեխա: Եվ այնուամենայնիվ սա իսկական ժողովուրդ է, իր լեզվով, իր տերիտորիայով և ինքնավարությամբ,

* Կաննիբալ — մարդակեր





ներ. ողջ գիշեր, մինչև լուսաբաց, վազվզում էր իր արահետով, որպեսզի տաքացնի սառչող մարմինը:

Կես գիշերին ինձ արթնացրեց վարչության պետը.

— Ցան, — ասաց նա, — ես երկար մտածեցի և որոշեցի քեզ հանձնարարել այս գործը: Ես ուրիշ մարդու ուղարկել չեմ կարող, վախենում եմ, որ տեղ չհասնի: Օդի ջերմաստիճանն ընկնում է մեծ արագությամբ, հիմա արդեն մինուս վաթսուն է: Ինքս գնալ չեմ կարող, դու գիտես, որ հիվանդ եմ, կաղում եմ, տեղ չեմ հասնի: Բանն այն է, որ Բորիսկինի լեռնանցքի հացթուխն այսօր հաց թխելու համար ալյուր է ստացել և մոռացել աղը չի տարել: Ես վախենում եմ, որ նա ետ կգա աղը տանելու, վտանգավոր ուշ է, կարող է սառչել: Մի օրվա մեջ երեք-չորս անգամ այդպիսի սառնամանիքին դուրս գալ չի կարելի: Խնդրում եմ դո՛ւ տանես աղը: Ես հիմա նրան հեռախոսով կհայտնեմ, որ այստեղից դուրս ես գալիս:

Ես դուրս եկա՝ աղի պարկը շալակիս:

Տայգան արձանացել էր խոր լռության մեջ: Ուժեղ սառնամանիքների ժամանակ օդն անշարժ է և անկենդան. միայն մառախուղն է իջնում լեռներից, լցնում ձորերն ու կիրճերը, փռվում հարթություններում և կապտավուն մշուշով ծածկում երկրի երեսը: Արծաթի թելերի նման փայլում են լեռների սառցե գագաթները: Ես դուրս եկա և անմիջապես զգացի թթվածնի պակասը, օդ չկար: Քայլում էի ծանոթ արահետով և հաշվում ճանապարհին հանդիպած կեչիները: Դրանով ես ցանկանում էի կրճատել ճանապարհը և ժամանակի տևողությունը: Երբ արդեն անցել էի գետի հովիտը և սկսել էի բարձրանալ Բորիսկինի լեռ-

սեփական տրակտորներով ու քողարկածությամբ:

Ութ օր շարունակ անցնում էինք կուսական անտառով, ճահիճներով, անհամար գետերով ու վտակներով: Եվ վերջապես, երբ երևացին տարածքների մոտիկության ուրույն նշաններ, մեր սևամորթ ուղեկիցները կտրականապես հրաժարվեցին առաջ գնալ: Չորս հոգով այնուամենայնիվ համարձակվեցինք հանդիպել սարսափելի տարածքների հետ:

...Մի քանիսը մեզ վրա ուղղեցին իրենց նետերը: Ի պատասխան դրան, մենք ցած դրեցինք մեր զենքը և անձայն ժպտալով գնացինք նրանց հանդիման: Ժպիտը պետք է ստեղծեր փոխհավատություն ու բարի ցանկությունների տպավորություն և դրանով իսկ փրկեր մեր կյանքը...

Կես ժամից հետո հայտնվեց ցեղի առաջնորդ Ապայոն և ինձ հրավիրեց իր հետ գետում լողանալու: Ես հաճույքով ընդունեցի այդ հրավերը: Որոշ ժամանակ անց, այդ նույն բանը խնդրեց գլխավոր քուրմը: Հարկ եղավ լողանալ բոլոր ցանկացողների հետ: Իսկ մեր երկու ուղեկցորդները լողացան տապարահինների հետ:

Այս ձևով նրանք արտահայտեցին իրենց հյուրընկալությունը: Դրանից հետո մենք ընդունվեցինք որպես ցեղի հյուրեր:

Սկզբում տանտերերը մեզ լրիվ չէին վստահում և տղամարդիկ, աղեղներով ու սրերով զինված՝ մեկ շաբաթ գիշեր ու ցերեկ պահակություն էին անում մեր խրճիթի առաջ: Սակայն կամաց-կամաց այդ «զգուշությունն» չքացավ, և մենք չորս ամիս համերաշխ անցկացրինք գյուղում:

Սովորաբար այս տեղերում ամբողջ գյուղի բնակիչները բնակվում են մեկ հսկայական զմբե-

նանցքը, հանկարծ գլուխս տարացավ, կարծես մեկը տաք գորշի շիթեց երեսիս։ Շնչելը դժվարացավ, ես ետ քաշեցի քողն երեսիս, բայց այդ չօգնեց, բացեցի ծածկս և ինչպես երազում, սկսեցի պտտվել, թեթև մեկերքի նման, ասես ձյան վրայով, առանց դժվարության վեր ելնելով, ցած իջնել... և ինձ թվաց, թե մեջքիս պարկը դատարկ է, թե ես հանում եմ վրայից տաք շորերը, մեղմության ու ջերմության է լցված շուրջս...

Արթնացա։ Ընկած էի երկու երիտասարդ կեչիների մեջ։ Հասկացա, որ քնած եմ եղել խորը, մահացու քնով։ Սարսուռ անցավ մարմնովս, վախը վայրկյանապես հանակեց ինձ։ «Վերջ» — մտածեցի ես ու հիշեցի Օլյայի խոսքերը. «Երբ այդպես է լինում, տարածում ես ու քունդ տանում է, նշանակում է՝ սառչում ես, դա շատ վտանգավոր է»։

Ես սկսեցի երգել, ձեռքերս շփել, որպեսզի ինքնազգացողությունս ստանամ։ Երգում էի երգեր բարձր, երգեր ցածր ձայնով, վազում էի, կանգ առնում, ոստում, ապխում, բայց այդ բոլորն իզուր էր։ Լինում էին այնպիսի վայրկյաններ, երբ ես հանկարծ զգում էի, որ քնած եմ։ Ծոցս ամփոփ սառնամանիք էր, իսկ իմ մարմինը թաց էր, ջերմս բռնած։

Եվ այս բոլորը տեղի էր ունենում Բորիսկինի լեռնանցքի ափերից ոչ հեռու։ Մի քանի քայլ էր մնացել, ափերին հասնելու։ Մարդիկ լսել էին իմ ձայնը և, երբ եկել էին օգնության, ես պառկած էի եղել ձյան վրա։

Ես սառչում էի։ Այս անգամ արթնացա այդ սարսափելի քնից հայտնվելով Անուշավան Տեր-Բարսեղյանի մահճակալի վրա։ Նա տեսնելով, որ ուշքի եմ գալիս, սկսել էր գրգռել իր ամոքական գործով և քթի տակ կանչել երգեր։ Նա երգում էր, որ ես չմոռանամ և աչքի առաջ նայում, թե ինչպես է արյունը վերադառնում իմ սառած դեմքին...

... Ես մի անգամ սառել էի և գիտեի, թե այդ ինչ է նշանակում։

— Ասյա, բացականչեցի, գլուխդ չի տարանում։

Նա ծիծաղեց իմ միամտության վրա և թափահարեց։

— Ես չեմ սառել, ասաց նա, բայց գիտեմ ինչպես են սառչում։

Մեր առջևից քայլում էր պատանի Օլյան։ Մի քանի հարթ տարածության վրա նա կանգ առավ։

— Հիմա հանենք ձեր շլերը, ասաց նա, և նայեց, թե ես ինչ եմ անում։

Նա շիշը խրեց ձյան մեջ և նորից դուրս քաշեց։ Ձյան մեջ մնացել էր շշի տեղը, շշի ձևի մի փոս։

— Հիմա մենք այստեղ այսպիսի փոսեր կանենք։

Երբ փոսերը պատրաստ էին, Օլյան նրանց շուրջը հապալասի կարմիր հատապտուղներ շաղ տվեց և ամեն մի փոսի մեջ մի բուռ հատապտուղ գցեց։

Մյուս օրը ցուրտը փոքր ինչ պակասեց. թեթև, շատ թեթև քամի բարձրացավ։



թաձև խրճիթում։ Նրա լայնությունը հասնում է 30, իսկ բարձրությունը 16 մետրի։ Այդ գյուղում, որպես բացառություն կար երկու խրճիթ։ Դրանք սարքված էին ճյուղերից և ծածկված էին արմավենու տերևներով։ Երկու խրճիթում ապրում էին բոլորը՝ 176 մարդ։

Խրճիթում նրանք առանձնացվում են ընտանիքներով՝ պատի երկայնքով ընկած «ընտանիքաբաժանմունքում»։ Այդ «ընտանիքաբաժանմունքների» միջև ոչ մի միջնապատ չկա. ցցված է սյուն, որի մի կողմում մի ընտանիքն է ցանցաճոճ կախում, մյուս կողմում՝ մյուսը։ Խրճիթի մեջտեղը հատկացված է մեռածներին թաղելու համար։ Այստեղ էլ պահվում են կավե ամաններ, որոնք լցված են լինում ամազոնյան հնդիկների սիրած խմիչքով՝ եգիպտացորենի գարեջրով։ Հենց որ արմավենու տերևները սկսում են փտել, և անձրևը սկսում է կաթել՝ բնակիչները իրենց համար փնտրում են այլ տեղ և նոր խրճիթ են շինում։

Տղամարդիկ և կանայք բոլորովին մերկ են։ Կանայք կարճ կտրում են մազերը, իսկ տղամարդկանց մազը հասնում են մինչև ուսերը։ Որպես պարտադիր զարդ՝ թե տղամարդիկ և թե կանայք կրում են ատամե օղեր, իսկ քթի և շրթունքների մեջ դնում են փայտե ձողիկներ։ Ականջի վրայից [illegible] կախում են խեցիներ, ատամներից կամ ընկույզի կեղևից սարքած շղթա։ Դեմքը ու մարմինը զարդարում են սև և կարմիր ոլորապտույտ զարդերով։





— Դե, գնանք, Յա՛ն,— ասաց Օլյանը,— գնանք որսը բերենք:

Այն, ինչ մենք տեսանք այդ օրը, մեզ շատ վրդովեցրեց: Երբ մոտեցանք ծանոթ բաց տարածությանը, թվաց, թե գիշերս ընթացքում այնտեղ սոխ էին ցանել, իսկ այժմ ցցված էին նրա ցողունները:

Ի՞նչ էր տեղի ունեցել: Երեք տասնյակի չափ ազնվակ կաքավներ թռել, եկել են հապալասի կարմիր պտուղները համտեսելու: Սոված թռչունները հավաքել են փոսերի շուրջը թափված հատապտուղները, հետո գլուխները կախել, որ փոսերից էլ վերցնեն, սառել են, իջել ցած և ետ դառնալ չեն կարողացել: Նրանց խանգարել են իրենց սեփական փետուրներն ու թևերը: Եվ որքան ջանք ու ճիգ են գործադրել դուրս գալու փոսից, այնքան ավելի խորն են իջել ու սառել:

Մենք այդ մասին ոչ ոքի ոչինչ չասացինք: Հյուսիսում այդպիսի հանցանքի համար շատ խիստ են պատժում, պատժում են չգրված և գրված օրենքներով: Իհարկե, կարելի է խորամանկել, սրամիտ հնարքների դիմել, որսին խաբել, բայց ոչ այսպիսի վայրենի, կոպիտ ու անազնիվ ձևերով:

— Ես այդ արեցի,— բացատրում էր Օլյանը,— երկու նպատակով, նախ ցույց տալու, թե ինչպիսի վայրենի միջոցներ կան, որոնցով ոչնչացնում են որսը և նրա համար, որ մենք կարողանանք վաղը կերակրել մեր հյուրերին:

— Ի՞նչ հյուրեր,— հարցրի ես:

— Վաղը մենք շատ թանկարժեք հյուրեր կունենանք, մեզ մոտ է գալիս կառուցողների մի մեծ բրիգադ: Մեր այս ավանի տեղում նոր ավան պետք է կառուցեն: Վաղը մենք նրանց կհյուրասիրենք թարմ կաքավներով և կառաջարկենք, որ այս ավանը կոչվի՝ Կաքավաստան:

Այդպես էլ եղավ: Ավանը կառուցվեց և կոչվեց Կաքավաստան: Եվ այդպես էլ կոչվում էր մինչև այն օրը, երբ մեծացավ, աճեց, դարձավ արդյունաբերական կենտրոն և իր տեղն ստացավ քարտեզի վրա: Այն ժամանակ ավանը քարտեզի վրա նշանակվեց Պատեկյա անունով:

Տասպարները սնվում են գլխավորապես վայրի կենդանիների՝ կապիկների, խոզերի, գետաձիերի մսով: Ուտում են նաև թռչուններ, զանազան օձեր, հավաքում են զանազան բույսերի պտուղներ ու արմատներ: Նրանք աճեցնում են հավեր և բադեր, զբաղվում են հողի մշակությամբ, աճեցնելով եգիպտացորեն, որից գարեջուր են պատրաստում: Վերջին պարտականությունը դրված է կանանց վրա. նրանք մանրում են եփած եգիպտացորենը, լցնում փայտե ամանների մեջ, վրան ջուր ու մի քիչ էլ մակարդ լցնում, և խմիչքը պատրաստ է:

Հնդիկների մոտ գոյություն ունի մասնավոր սեփականություն: Բայց միայն խրճիթն ու հողը: Այն, ինչ՝ կապված է եգիպտացորենի մշակման հետ, օգտագործվում է միասին:

Ցեղին ժառանգաբար իշխում է առաջնորդը, բայց գործերը կառավարում են քուրմերը: Նրանք էլ բուժում են հիվանդներին և կատարում կրոնական ծեսերը: Խիստ կարևոր դեպքերում հավաքվում են գյուղի բոլոր կախարդները և քթի մեջ ծխախոտի փոշի կամ խիտ դրդիչ նյութեր փչելով, կանչում են մահացածների հոգիներին և խնդրում նրանց խորհուրդն ու օգնությունը:

Շատ տարիների ընթացքում տասպարները մարդակերներ էին: Այդ սովորության հետևանքով ցեղի թիվը կրճատվեց, երկու հազար մարդուց մնաց 176: Սպանությունը սովորաբար կատարում էր մեկը, իսկ կեր ու խումը անում էին միասին: Սակայն հեռատես առաջնորդ Արայան կարողացավ համոզել իր ցեղակիցներին՝ հրաժարվելու այդ սովորությունից, որպեսզի ցեղը պահպանի լրիվ բնաջնջումից: Բարեբախտաբար այս ռեֆորմը կատարվել էր Բրազիլիա կատարած մեր ուղևորությունից հինգ տարի առաջ, այլապես այս ակնարկը երբեք չէր գրվի:

ՏԻԲՈՐ ՍԵԿԵԼ



# Գիշերը Ջունգլիներում

ԱՇՄՈՐ ՊԻՐԻՍ

(Ցեյլոն)

Արևը մի պահ փայլեց ու հանգավ,
Իրար ձուլվեցին ստվերները թավ,
Եվ լույս ցերեկվա հմայքն անտառի
Ծածկվեց իսկույն քողով խավարի...
Արևն է չքվել, բույսերը՝ նիրհել,
Ջունգլին ծայրեծայր մութն է պարուրել:

Լսու՞մ ես, մռայլ բվերն արթնացան,
Ընձառյուծն ահա դուրս եկավ անձայն,
Մանգուստի բիբը չար, նման բոցի,
Կովի է կանչում ամենի օձին.

Ճպուռն է իր սուր բզզոցով երգում,
Եվ մութ դարանից հովազն է եղնում:

Հաստաբուն ծառի հետևում ահա՞
Թաքնվել է մի բծավոր պախրա...
Թույլերը ինչպե՞ս խաղաղ քուն մտնեն,
Երբ արջը ոխ է որոնում արդեն.
Լսու՞մ ես խաղաղ, անմեղ եղջերուն
Ոսոխի կուրծքն է պոզերը խրում:

Ռուս. թարգմ. Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ

## ԱՅՆՏԵՂ, ՈՒՐ ՀԱՆԴԻՊՈՒՄ ԵՆ ԵՐԿԻՆՔՆ ՈՒ ԵՐԿԻՐԸ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԱՍԱՏՈՒՐ ՊԱՐՈՆՈՒԿՅԱՆԻ

Ա.

Երեկոյան, երբ արևն արդեն թաքնվել էր ծառերի սաղարթների մեջ, բացատում հնչեց կավե թմբուկի ձայնը: Երիտասարդ բատվաները[1] իրենց կարճ նիզակները պարզած, թմբուկի հարվածների տակ դուրս եկան բացատի կենտրոնը, ուր վառվում էր հսկայական մի խարույկ:

Բացատի եզրին, շրջանաձև կանգնած էին կանայք ու երեխաներ: Նրանք լուռ դիտում էին: Թմբկահարը՝ մարմինը կրով նախշած ու բազուկներին ապարանջաններ հագցրած, կարճլիկ այդ մարդուկը, դանդաղ պտտվում էր խարույկի շուրջը և երկու ձեռքով հարվածում թմբուկին:

Պարը սկսվեց: Բատվաները իրենց համր շարժումներով ցուցադրում էին անտիլոպների որսի տեսարանը: Խարույկի լույսի տակ նրանց սև մարմինները կարմրավուն երանգ էին ստացել: Իսկ մինչև հեռու ծառերի բները համնող ստվերները ծիծաղելի կերպով կրկնում էին նրանց միօրինակ շարժումները: Ես ձանձրացա: Թեքվեցի Նիլս Նիլսոնի ականջին ու շշնջացի.

— Նրանք երկա՞ր են պարելու:

Դոկտորը միայն գլխով արեց: Մեր երկարատև ճանապարհորդության ընթացքում նա հազվադեպ էր խոսում: Հիշում եմ, երբ դեռ Քեյփթաունում էինք, դոկտոր Նիլսոնը ամբողջ տասը բողե ինձ հետ վիճեց: Դա միակ դեպքն էր, երբ միշտ լակոնյաց ու սառնարյուն դոկտորն անընդհատ ճգում էր փարթամ մորուքից: Նա երբեմն էլ ձայնը բարձրացնելով, համոզում էր, որ երկնային Գեղեցկուհու հետ կապված բոլոր պատմությունները դատարկ ավանդություններ են:

Բայց ես չէի համարձակվում ոչ համաձայնել և

1. Բանտու ցեղերի լեզվով «բատվա» նշանակում է «փոքրիկ մարդ»: Այդպես է կոչվում Կենտրոնական Աֆրիկայի թզուկ ցեղերից մեկը:



ոչ էլ անզգուշաբար վիրավորել նրան: Դոկտոր Նիլսոնը համաձայնեց իր հանգիստը Հայաստանում հետաձգել ու ընկերակցել ինձ միայն այն պատճառով, որ խնդրի պես սիրում էր աֆրիկական բնությունը:

Մինչ ես, նայելով կրակի երերուն բոցին, մտածում էի, երիտասարդ բատվանների պարը տաքանալով հասավ գագաթնակետին: Նրանք շարժում էին ճկուն մարմինները, բացատում ձգվում էին նրանց ծիծաղաշարժ ստվերները, իսկ կանայք ծափ էին տալիս ու սուր, փոքր-ինչ ճղճղան ձայներով աղաղակում:

Նիլս Նիլսոնը վառեց ծխամորճն ու վեր կացավ:

— Գնա՛նք,— ասաց նա:

Ես հետևեցի նրան:

Մտանք բատվանների կոնաձև խրճիթներից մեկը, որը մեր հյուրընկալները տրամադրել էին մեզ: Դոկտոր Նիլսոնը վառեց գրպանի լապտերն ու կախեց կենտրոնում գտնվող սյունից:

— Քնենք,— ասաց նա:

— Դեռ շուտ է:

— Վաղը գործեր ունենք:

Ես ուզում էի առարկել, բայց չգիտեմ ինչու, ոչինչ չասացի: Միայն լապտերը մարեցի:

Գործեր... Իսկ ամենից շատ ինձ հրապուրում էր այն վայրը, ուր հանդիպում են երկինքն ու երկիրը, այն տեղը, ուր ըստ ավանդության, հավերժական հանգստի մեջ է Երկնային Գեղեցկուհին: Վաղուց, շատ վաղուց ես լսել էի նրա մասին, որը գտնվում էր ոտքերին լողաթաղանթներ ունեցող բատվանների աշխարհում: Ես երազում էի այն օրը, երբ վերջապես կպարզվի Երկնային Գեղեցկուհու հետ կապված գաղտնիքը: Երազում էի տեսնել նրան:

— Բարի գիշեր,— հանկարծ լսեցի անկյունից Նիլս Նիլսոնի ձայնը: Նրա ծխամորճի կրակը այդ խոսքերի հետ խավարի մեջ մի աղեղ գծեց:

Չպատասխանեցի:

Տխուր բան է ճանապարհորդել մի մարդու հետ, որը խոսել չի սիրում:

Բ

Անտառը վաղորդյան թարմությամբ էր շնչում: Արևը դեռ չէր ծագել: Ջունգլիները թաղված էին հաճելի կիսամութի մեջ: Հսկայական ծառերի սաղարթներից մինչև գետին էին հասնում օձանման կանաչ լիանաները: Մենք քայլում էինք փղերի արահետով:

Շրջապատը լի էր աֆրիկական անտառների բնակիչների անհանգիստ ձայներով: Մեր գլխավերևը՝ ծառերի ճյուղերից կախված, իրենց ամենօրյա բամբասանքն էին սկսել կապիկները: Մեզ տեսնելով, նրանք քչփչում էին իրար ականջի, երբեմն էլ ճչում և իջնում մինչև ծառերը՝ ծաղրելու համար: Բատվանները ոչ մի ուշադրություն չէին դարձնում այդ շատախոսների վրա: Նրանք ներքին մի տարօրինակ հանգստությամբ և դեպի կապիկները ունեցած նկատելի արհամարհանքով քայլում էին լուռ, կքված կացինների ու դանակների ծանրության տակ, որոնք պետք է փոխանակեին հարևան թզուկ ցեղերի հետ: Վերջիններս ապրում են այնտեղ, ուր հանդիպում են երկինքն ու երկիրը: Նրանց մասին ավանդություն կա, թե ոտքերի վրա լողաթաղանթներ ունեն:

Քանի որ Նիլս Նիլսոնը չէր խոսում, ես ստիպված էի քայլել լուռ՝ թաղված սեփական մտքերիս մեջ:

Բայց ներքուստ գոհ էի, որ այս անծանոթ աշխարհը եմ եկել դոկտոր Նիլսոնի հետ: Նրա անհրաժեշտությունը ես ավելի շատ զգացի բատվանների հետ հանդիպման հենց առաջին օրը: Եվ չգիտեմ, ինչպիսին կլիներ իմ առաջին հանդիպումը նրանց հետ, եթե չլիներ դոկտորը:

Երբ անտառի թավուտում հանդիպեցինք կարճահասակ մի մարդու, անմիջապես գլխի ընկա, որ նա բատվանների ցեղի ներկայացուցիչն է: Ոգևորված նրան ձեռքով նշան արեցի, որ մոտենա: Բայց բատվանը կարծես ոչինչ չէր հասկանում: Այդ պահին էր, որ Նիլս Նիլսոնը հեգնանքով նայեց ինձ և երկու ձեռքի ափերը դեպի ցած ձգելով, մատները շարժեց: Բատվան մոտեցավ:

Դե, դոկտորը գիտեր, թե նրանց հետ ինչպիսի շարժումներով պետք է բացատրվել: Չէ՞ որ նա խոսել չէր սիրում...

...Վաղորդյան մշուշը աստիճանաբար ցրվեց: Ծառերի սաղարթների միջից երևացին արևի առաջին



ճառագայթները: Մենք արդեն բավականին հեռացել էինք գյուղից:

Հանկարծ բատվաները երկյուղածությամբ դանդաղեցրին քայլերը:

Ես հանեցի ուլտրաձայնային ատրճանակը և պատրաստ նայեցի դոկտոր Նիլսոնին: Թող նա չկարծի, որ այդքան անփորձ եմ:

Բայց դոկտորը միայն կանգնեց, ոտքը դրեց արահետի երկայնքով ընկած կիսափտած ծառին ու ամրացրեց կոշիկի կապերը:

«Չեացնում է»,—մտածեցի ես:

Քիչ հետո հայտնվեցինք մի ընդարձակ բացատում: Այստեղ մի հսկայական բաոբաբ էր տապալված: Նրա ճյուղերը վաղուց արդեն չորացել էին:

Բատվաները զգուշությամբ մոտեցան մեռած ծառին և սկսեցին երկրպագել:

— Սա ի՞նչ ծառ է, որ այդպես երկրպագում են,— հարցրեցի ես:

— Բաոբաբ:

— Տեսնում եմ... Բայց ինչու՞ են նրանք երկրպագում:

— Որովհետև այդ ծառը վերջերս անգլիացիներն են կտրել,—պատասխանեց Նիլս Նիլսոնը:

— Ինչու՞ են երկրպագում:

— Հաջող որս ունենալու համար,—ասաց Նիլս Նիլսոնը և այնպես նայեց վրաս, որ վճռեցի չերկարացնել խոսակցությունը:

Մինչ այդ բատվաները ոտքի կանգնեցին, և մենք շարունակեցինք գնալ դեպի Բանգվեոլո լիճը, այնտեղ, ուր հանդիպում են Երկինքն ու Երկիրը:

հուն և գույն ամեն օր արևածագին ու արևամուտին գնում են նրան երկրպագելու:

... Շուտով նավակները դիպան ափի եղեգնուտներին ու ցնցվելով կանգ առան: Նավակներից դուրս թափվեցին մի խումբ թզուկներ: Նրանք դանակներն ու կացինները վերցնելով, ողորկ քարի վրա դրեցին իրենց հետ փոխանակման համար բերած քաղցր կարտոֆիլը, դդումները, գետնընկույզ և բանաններ:

Երբ առևտրի արարողությունն ավարտվեց, Նիլս Նիլսոնը հանկարծ դուրս եկավ թաքստոցից և ինչ-որ անհասկանալի բան բղավելով, նշաններ արեց:

Բանգվեոլո լճի թզուկները երևի հասկացան նրան, որովհետև ոչ մի խուճապահար շարժում չկատարեցին, երբ մենք մոտ գնացինք:

Նիլս Նիլսոնին հաջողվեց նրանց համոզել, որ մեզ էլ իրենց հետ վերցնեն:

Քիչ հետո մենք արդեն կղզու վրա էինք:



Գ

Դ

Բանգվեոլո լճի ափին գտնվում էր մի մեծ, ողորկ քար, որը կարծես ջրի միջից էր աճել: Բատվաները կացիններն ու դանակները դրեցին այդ քարի վրա և հեռացան դեպի անտառի խորքը: Ես և դոկտոր Նիլսոնը թաքնվեցինք ծառերից մեկի հետևը:

Քիչ հետո լճի հայելանման հարթության վրա հայտնվեցին մի քանի նավակ: Նրանք դանդաղորեն մոտենում էին ափին:

Հուզմունքից ես նույնիսկ դժվարանում էի շնչել: Ահա այն մարդիկ, որոնց ոտքերը լողաթաղանթներ ունեն: Նրանք ասում են Երկնային Գեղեցկու-

Այս ամբողջ ճանապարհորդության ընթացքում ես միայն կարողացա ստուգել, թե արդյո՞ք կղզիբնակ բատվաները իրենց ոտքերին լողաթաղանթներ ունեն: Պարզվեց, որ՝ ոչ:

Իսկ Երկնային Գեղեցկուհու հետ կապված ավանդությունը...

Ո՛չ: Այդ մասին ես ոչինչ ասել չեմ կարող:

Բայց հույս ունեմ, որ հաջորդ արշավից հետո, որ պետք է կազմակերպեմ առանց չխոսկան ու թերահավատ դոկտոր Նիլսոնի մասնակցության, կկարողանամ ձեզ որևէ տեղեկություն հայտնել առեղծվածային Երկնային Գեղեցկուհու մասին:




# ԲԱՀՈԲՈ

Ն. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ.

Բահոբոների հետ ծանոթանալու համար դուք պետք է թափանցեք Ֆիլիպինյան արշիպելագը կազմող 3141 կղզիներից մեծությամբ երկրորդի, Մինդանաոյի խորքը։ Արևադարձային անտառներում շրջագայելու ժամանակ զգուշությունը երբեք ավելորդ չի լինի։ Բայց երբ հասնեք Բահոբո ցեղի որսորդների այցելավայրերը, պետք է հատկապես զգույշ լինել. ամեն մի քայլի վրա ձեզ կարող են հետապնդել զանազան «անակնկալներ»։

Բայց ահա դուք հաջողությամբ խուսափեցիք եղջերուների և վայրի գոմեշների համար նախատեսված ծուղակներից և դուրս եկաք մի փոքրիկ բացատ։ Առաջին հայացքից այն ոչնչով աչքի չի ընկնում։ Սակայն դա բահոբոների մեծ գյուղի գլխավոր հրապարակն է։ Բահոբոները չեն սիրում բաց տեղերում ապրել։ Նրանց խրճիթները խնամքով թաքնված են թավուտում։

Դուք չեք տեսնում գյուղի բնակիչներին, բայց նրանք ձեզ իսկույն նկատում են և շուտով հայտնվում են բացատում։ Նրանց հագուստները արևի տակ շողշողում են։ Կարելի է կարծել, որ տոն է գյուղում։ Բայց այդպես չէ։ Նույնիսկ իրենց ամենօրյա հագուստները բահոբոները առատորեն զարդարում են մարգարիտով։ Տարբերվելով արևադարձային անտառների բնակիչների մեծ մասից, բահոբոները չեն բավարարվում միայն ազդրակապեր և լայնեզր գլխարկներ կրելով։ Կանայք հագնում են լայն բաճկոններ և վանդակազարդ շրջազգեստներ, տղամարդիկ՝ բաճկոններ և նեղ, մինչև ծնկները հասնող անդրավարտիքներ։ Այդ ամենը զարդարված են մարգարտաթելերով։ Ե՛վ կանայք, և՛ տղամարդիկ ականջներին հագցնում են փղոսկրե մեծ սկավառակներ։ Գլխանոցների և ապարանջանների վրա ղողանջում են պղնձե զանգակները։

Բահոբոների բամբուկե խրճիթները կանգնած են փայտե ամուր ցցերի վրա։ Տուն մտնելու համար պետք է բարձրանալ սանդուղքով։ Գիշերը միջնադարյան բերդերի կամուրջի պես սանդուղքը բարձրացվում է, և խրճիթ մտնել






հնարավոր չի լինում։ Խրճիթի ներսում ընդարձակ է։ Մի անկյունում մի փոքր բարձրություն է պատրաստված քնելու համար։ Պատերի և հատակի լայն ճեղքերը անհրաժեշտ են ոչ միայն օդափոխության, այլև կրակի անպարծը գցելու համար։ Երեկոյան խրճիթներում վառվում են մոմատու ընկույզի լապտերները։

Բահոբոներն աճեցնում են բրինձ և քաղցր գետնախնձոր։ Հողը մշակում են սրածայր, երկար ձողի՝ պարզագույնի օգնությամբ։ Ձողի վերին ծայրին ամրացված է բամբուկե բռնակ։ Բռնակի չրխչրխկոցը պետք է հանգստացնի դաշտը հսկող ոգուն, որպեսզի նա չխանգարի աշխատանքը։ Ոգիները, որոնց երկրպագում են բահոբոները, շատ են, և բոլորն էլ զոհաբերություն են պահանջում։ Յուրաքանչյուր խրճիթի առաջ կա զոհասեղան։ Նրա վրա ամեն օր թարմ մրգերով լի սկուտեղ են դնում։ Բայց բոլոր ոգիները չէ, որ մրգերով են բավարարվում։ Բահոբոների հավատի համաձայն, որոշ ոգիների ողորմածությունը շահելու համար պետք են մարդկային զոհեր։ Բայց այժմ արդեն այդ արյունալի սովորույթը վերանում է։ Բահոբոների և հարևան ցեղերի գյուղերում ավելի հաճախ կարելի է տեսնել եղբայրացման ծեսը՝ Դեյանդղին։ Նախկին թշնամիները բարեկամանում են։ Որպես հաշտության նշան, ցեղի առաջնորդը, հաշտվողների մատների վրա խոր կտրվածք է բացում, և ամեն մեկն իր շրթերին է հպում մյուսի արյունոտ վերքը։ Այս ծեսից հետո նրանք արյունակից եղբայրներ են դառնում։

Ավելի ու ավելի սակավ են պատերազմներ բռնկվում Մինդանաո կղզու խորքերում բնակվող տարբեր ցեղերի միջև։ Դրանց փոխարինում են բարեկամական, բարի դրացիական հարաբերությունները։

(«Վոկրուգ սվետա» ամսագրից)




ԷՐՆԵՍՏ ՀԵՄԻՆԳՈՒԵՅ

Մենք շատ վաղ պառկեցինք քնելու։ Գիշերը անձրև տեղաց, ավելի շուտ՝ ոչ թե անձրև, այլ կարճատև տեղատարափ, իսկ մյուս օրը մինչև արևածագը, մենք արդեն ոտքի վրա էինք և անցնելով մեր ճամբարի թմբերի վրայով, ցած իջանք գետի հովիտը, այնտեղից դուրս եկանք հակառակ զառիվայր ափը, որտեղից երևում էին բոլոր բլուրները և անտառի եզրը։

Մեր գլխավերևից անցան մի քանի վայրի բադեր։ Օրը դեռ այնքան չէր լուսացել, որ հեռադիտակով պարզ երևար անտառի եզրը։ Տարբեր տեղերում, երեք բլուրների վրա նստել էին մեր պահակները, իսկ մենք սպասում էինք, մինչև որ ցրվեր մշուշը, և երևային նրանց ազդանշանները։

Հանկարծ Դերուկը բացականչեց.

Հապա նայեցեք այդ սրիկային։

Եվ կարգադրեց Մ՛Կոլային, որ տա հրացանը։ Մ՛Կոլան ժայռից ցած թռավ, իսկ մենք առվակի մյուս ափին, ուղիղ մեր դիմաց տեսանք վազող ռնգեղջյուրին։ Ահա նա արագացրեց իր քայլերը և միանգամից շուռ գալով գնաց դեպի ջուրը։ Նա մուգ կարմրագույն էր, լավ զարգացած եղջյուրով, և նրա անկաշկանդ ու սրընթաց շարժումները չէին ասում, որ նա ծանր քաշ ունի։

Մ՛Կոլան ձեռքս խոթեց «Սպրինգֆիլդը», և ես բացեցի փականակը՝ տեսնելու հրացանը լցվա՞ծ է, թե՞ ոչ։

Ռնգեղջյուրն արդեն աչքից կորել էր, բայց բարձր խոտերի շարժումից նրա հետքը հեշտ էր գտնել։

— Ինչքա՞ն է հեռու, ի՞նչ եք կարծում։

— Մոտ երեք հարյուր յարդ կլինի։

Լարված նայում էի և միայն նիգ անելով զգուշացի իմ զգուշությունը, պահպանելու համար այն անվրդով վիճակը, որ անհրաժեշտ է կրակելու համար։

Ահա նա կրկին հայտնվեց տիղմից առաջացած ծանծաղուտի վրա։ Կարծելով, որ իմ առջև գտնըվում է արդեն պատրաստի ավարը, նշան բռնեցի։ Հրացանի հատիկը պահելով ռնգեղջյուրից քիչ առաջ, քաշեցի ձգանը։ Ես լսեցի գնդակի շառաչը և տեսա, թե ինչպես ռնգեղջյուրը ցնցվեց։ Խլացուցիչ փնչոցով նա առաջ նետվեց՝ ջրի շիթեր շաղ տալով շուրջը։ Ես նորից կրակեցի և գնդակով փոքրիկ շատրվան առաջացրի նրա հետևում։ Ապա նորից կրակեցի, երբ նա դուրս եկավ խոտերի մեջ, բայց կարծես թե էլի վրիպեցի...

— Դիպա՞վ,— հարցրեց Դերուկը։

— Բա ո՞նց,— պատասխանեցի ես,— ինձ թվում է, որ նա ձեռքիցս չի՛ պրծնի։

Դրուպին արդեն վազում էր ռնգեղջյուրի հետևից, իսկ ես նորից լցրեցի հրացանը և հետևեցի նրանց։

Մեր ճամբարականների կեսը ճիչ ու կանչով ձեռքերը թափահարում ու վազում էր բլուրից բլուր։

Ռնգեղջյուրը ուղիղ մեր ոտքերի տակով սլացավ և իջավ գետն ի վար, այնտեղ, ուր անտառը հասնում էր մինչև հովիտը։

Դրուպին տեղացիներից մեկի հետ գնում էր ռնգեղջյուրի հետքերով։ Եվ հանկարծ երկուսն էլ կանգ առան։ Դրուպին բարձրացրեց ձեռքը։

## ԵՐՋԱՆԻԿ ԲԱՑԱՌՈՒԹՅՈՒՆ

*Կար ժամանակ, որ զանազան բուժիչ հատկություններ էին վերագրում ասիական կամ աֆրիկյան ռնգեղջյուրի արյան, ոսկորների և եղջյուրների մեջ գտնվող նյութերին։ Իհարկե, հենց այդ էր պատճառը, որ ռնգեղջյուրը այդքան շատ գրգռել էր մի շարք «գործարար» մարդկանց ախորժակը, որոնք այդ գազանի համար հեքիաթային գումարներ էին ստանում։*

*Ահա հենց այդ պատճառով էլ 20-րդ դարի սկզբին ռնգեղջյուրը համարյա ոչնչացվեց։*

*Հետազոտությունները ցույց են տվել, որ նա ամբողջովին ոչնչացված է Թայլանդում, Մալակա թերակղզում, Սումատրա կղզում և Հնդկաչինում։ Սակայն կան երջանիկ բացառություններ։*

*Այժմ Հնդկաստանի արգելանոցներում պահված են ոչ մեծ թվով ասիական ռնգեղջյուրներ։ Վերջերս մի քանի հատ հայտնաբերվել է Կալիմանտան կղզում (Բորնեո)։ Յավա կղզու արևմտյան ծայրամասում Ուջոնգ-Կուլոն («Արևմտյան Հրվանդան») կոչվող արգելանոցում, որ ստեղծված է 1921 թվականին, կան 35-ից ոչ պակաս ռնգեղջյուրներ։*

— Նրանք լսել են գազանի ոտնաձայնը,—ասաց Ծերուկը.—պետք է շտապել:

Մենք արագ իջանք ներքև, Դրուպին մեզ դիմավորեց և ինչ-որ բան ասաց Ծերունուն.

— Ռնգեղջյուրն այստեղ է,—շշնջալով բացատրեց Ծերուկը.—Նրանք ձայներ են լսում... Մենք կգնանք հողմահարված ափով: Դուք Դրուպիի հետ գնացեք առաջ, իսկ Մեմսաիբն էլ թող գա իմ հետևից: Վերցրեք մեծ հրացանը: Ահա այդպես:

Թփերի հետևը, բարձր խոտերի մեջ ինչ-որ տեղ թաքնվել էր ռնգեղջյուրը: Երբ մոտեցանք, այնտեղից գալիս էր ցածր ու ծիգ մի ձայն, որը շատ նմանվում էր հառաչի: Դրուպին կողքանց նայեց ինձ ու ժպտաց: Ձայնը կրկնվեց, այս անգամ ռնգեղջյուրը, ըստ երևույթին, խռխռացրեց, արյունը կուլ տալով: Դրուպին ծիծաղեց... Հետո մենք տեսանք, թե ինչպես սրակտուց թռչունների մի երամ թռավ: Այժմ մենք հաստատ գիտեինք, թե որտեղ է ռնգեղջյուրը, և դանդաղ, խոտերի միջով շարժվեցինք առաջ, մինչև որ գազանը երևաց.

Նա սպանված կողքի էր ընկել:

Երբ մոտեցան մյուսները, մեր ընդհանուր ուժերով բարձրացրինք ռնգեղջյուրին և դրեցինք այնպես, ասես թե ծնկների վրա կանգնած լիներ և նրա կողքերի խոտը հնձեցինք, որ նկարահանումներ կատարենք: Գնդակը մեջքից մտել էր թոքերի մեջ:

— Շատ հաջող կրակոց է եղել,—ասաց Ծերուկը,—հազվադեպ հաջող, բայց այդ մասին որևէ մեկին չպատմեք...

— Դուք ինձ պետք է վկայական տաք:

— Այդ դեպքում մենք երկուսս էլ ստախոսներ կհամարվենք, բայց զարմանալի գազան է, չէ՞, ռնգեղջյուրը:

Ահա և նա՝ ռնգեղջյուրը, երկարավուն, անձոռնի, ծանրաքաշ նախապատմական արարածի տեսքով: Մաշկը կարծես փայլեցրած ռետինից լիներ և թեթև կայծկլտում էր, նրա վրա մի թարմ վերք էր երևում, որ կտուցով բացել էին թռչունները, իսկ պոչը հաստ էր, կարճ և ծայրը սուր: Ամբողջ մարմնի վրա սողում էին բազմաթիվ ոտներով տափակ շնաճանճեր: Ականջները մազոտ էին, աչքերը՝ խոզի աչքերի պես նեղ, իսկ միակ եղջյուրի արմատը ծածկված էր աղվամազով:

Մ՛Կոլան նայեց ռնգեղջյուրին և գլուխն օրորեց, ես նրան հասկացա, իրոք որ հետաքրքիր նմուշ էր:

— Ձեզ դո՞ւր է գալիս եղջյուրը:

— Վատը չէ,—պատասխանեց Ծերուկը:—Բայց առանձնապես մի բան չի: Իսկ ձեր կրակոցը, ա՜, դա արդեն հրաշքներից հրաշք էր:

Մ՛Կոլային շատ մեծ բավականություն պատճառեց ռնգեղջյուրը,—ասացի ես:

— Քեզ էլ պակաս բավականություն չի պատճառել,—ասաց Մամսն.

— Ես արդեն խելքահան եմ եղել, բայց ավելի լավ կլինի այդ մասին չխոսենք, թե չէ այլևս չեք կարող կանգնեցնել: Մեկ չէ՞ արդյոք ձեզ համար, թե ինչ եմ ես մտածում: Այդ մասին ես կարող եմ գիշերն էլ մտածել, երբ բոլորդ քնած կլինեք:

— Այդ բոլորից բացի դուք հիանալի հետապնդող եք և թռչուններին թռիչքի պահին խփող,—ասաց Ծերուկը:—Դե, էլ ի՞նչ եք ուզում:

— Թողնենք: Ես այդ մասին ասացի միայն մեկ անգամ, այն էլ՝ երբ հարբած էի:

— Լսու՞մ եք, միայն մեկ անգամ: Բայց մի՞թե նա այդ չի կրկնում ամեն գիշեր:

— Ազնիվ խոսք, ես իրոք թռչուններին խփում եմ թռիչքի ժամանակ:

— Զարմանալի է,—ասաց Ծերուկը,—երբեք մլուքովս չէր անցնի: Էլ ի՞նչ կարող եք անել:

— Գնա բանից:

— Ավելի լավ է նրան չասեք, թե ինչքան լավ է կրակել, հակառակ դեպքում պատիժ կդառնա,—ասաց Ծերուկը Մամային.

— Ես ու Մ՛Կոլան գիտենք այդ,—ասացի ես:

Մ՛Կոլան մոտեցավ մեզ:

— Մ՛ուզուրի Բվանա,—ասաց նա:—Մ՛ուզուրի Մամա:



Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

— Նա կարծում է, թե դա պատահական չէ,— բացատրեց Ծերուկը։

— Մի՛ փոխեք նրա կարծիքը։

— Երևում է, որ դուք էլ նույն կարծիքին եք,— նկատեց Ծերուկը։

— Մենք բարեկամներ ենք։

— Երևում է, որ բարեկամներ եք։

Մենք կանգ առանք ճամբայից ոչ հեռու և սկսեցինք ձայն տալ։ Ոչ ոք չպատասխանեց։ Վերջապես վրանից դուրս եկավ Կարլը։ Մեզ տեսնելով, նա քաշվեց, ապա նորից դուրս նայեց։

— Հե՜յ, Կարլ,— բացականչեցի ես։

Նա ձեռքով արեց և նորից մտավ վրան: Հետո դուրս ելավ ու եկավ մեր կողմը։ Նա հուզմունքից դողում էր։

— Ի՞նչ կա ձեզ մոտ:

— Ռնգեղջյուր,— պատասխանեց նա:

— Դժբախտությո՞ւն է պատահել։

— Ոչ, մենք խփեցինք նրան։

— Այդ լավ է, իսկ որտե՞ղ է նա:

— Ա՛յ էն ծառի մոտ։

Մենք արագ քայլեցինք առաջ։ Ծառի տակ ընկած էր ռնգեղջյուրի հենց նոր կտրած գլուխը։ Այն էլ ինչպիսի՜ ռնգեղջյուր, նա երկու անգամ մեծ էր իմ խփածից։

— Եղջյուրն ինչքա՞ն է. երեսուն դույմ կլինի՞։

— Չէ, երեսուն չի լինի,— համառեց Ծերուկը։

— Այնուամենայնիվ հիանալի ավար է, միստր Ջեկսոն,— մեջ ընկավ Դենը։— Ջնաշխարհիկ է։

Մենք այդպես էլ մնացինք կանգնած ու անկեղծորեն ցանկանում էինք շնորհավորել ընկերներին, մեծահոգաբար գովաբանել նրանց խփած ռնգեղջյուրը, որի փոքրիկ եղջյուրը ավելի մեծ էր, քան մեր խփած գազանի մեծ եղջյուրը։

*Ռուս. թարգմ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

# Չար կողմնացույցը

ԳՈՒՐ. ԱՍԱՏՐՅԱՆ

*Վաղ առավոտյան մի խումբ պիոներներ*
*Արշավի ելան դեպի Քանաքեռ:*
*Քանաքեռն անցան, և արձակ դաշտում*
*Ղեկավար Կարոն ճամփան կորցրեց.*
*— Կողմնացույց բերեք:*
*Բերեցին իսկույն,*
*Տուփը գեղեցիկ, սլաքն երկու գույն:*
*Նայեց մեր Կարոն ու չհասկացավ,*
*Թե ո՞րն է հյուսիս և ո՞րը՝ հարավ:*
*Բայց ինչպե՞ս ասի, թե չի հասկանում..*
*— Ահա՛, ճանապարհն այսպես է գնում:*
*Ու հարավի տեղ նա տարավ հյուսիս,*
*Ձախում՝ Արագած, հետևում՝ Մասիս:*

*— Բայց, թե հարավ ենք հիմա մենք գնում,*
*Ինչու՞ Մասիսը մնաց ետևում:*
*Ինչու՞ է փախել Արագածը ձախ,*
*Կամ մի՞թե Զանգուն թափվում է Սևան,—*
*Պիոներները հարցրին այսպես:*
*— Առաջնորդում եմ արշավանքը ե՛ս.*
*Հետևեցեք ինձ, և երեկոյան*
*Մենք Նոր Արեշով կիջնենք Երևան...*



*Ամառվա շոգին, մինչև իրիկուն,*
*Քայլեցին նրանք սարում ու ձորում.*
*Վերջն էլ իր խմբով Կարոն անճարակ*
*Նոր Արեշի տեղ հասավ Աշտարակ:*

Նկ. Վ. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

# Չորս տարի Հյուսիսում

Ա. ԽՐԱՅԵԼՅԱՆ

Նկ. Ժ. ԳԱՐՈՆՅԱՆԻ

Այս պատմվածքների հեղինակը՝ Արտեմ Խրայելյանը ռադիոտեխնիկ է: Ձեզանից շատերի նման նա երազում էր ճանապարհորդությունների մասին: Լինելով համառ ու հաստատակամ, նա վերջ ի վերջո հասավ իր նպատակին: 1945 թվականից մինչև 1950 թվականը նա ձմեռել է Հյուսիսային բևեռային կայանում, որը գտնվում է Չորս սյուների կղզու վրա: Ա. Խրայելյանը գրել է «Չորս տարի Հյուսիսում» գիրքը, որտեղ պատմում է բևեռային այդ կայանում անցկացրած իր կյանքի մասին:



### ՀԵՂԻՆԱԿԻ ԿՈՂՄԻՑ

Նախքան Արկտիկա մեկնելս, շատերից եմ լսել, թե իբր հիմա այնտեղ ոչ մի հետաքրքիր, խորհրդավոր կամ դժվարին բան չկա, քանի որ Արկտիկան արդեն վաղուց յուրացվել է, նրա խուլ անկյունները ուսումնասիրվել են: Չէ՞ որ ամենուրեք երթևեկում են ամենագնացները, սառցահատները ու ինքնաթիռները:

Սակայն ես շուտով համոզվեցի, որ այդպես մտածողները նրանք են, ովքեր սխալ պատկերացում ունեն Արկտիկայի մասին: Ինչ խոսք, որ բնությունն այնտեղ, ինչպես միշտ, հիմա էլ դաժան է, խստաշունչ, և այնտեղ ապրող ու աշխատող սովետական մարդիկ քիչ սխրագործություններ չեն կատարում: Նրանց կատարած աշխատանքը չափազանց կարևոր է: Հարյուրավոր ու հազարավոր ծովագնացներ, օդաչուներ, ռադիստներ, օդերևութաբաններ և բազմաթիվ այլ մասնագիտությունների տեր մարդիկ հերոսական աշխատանքով յուրացնում են ցուրտ Արկտիկան, մեր տնտեսության համար օգտագործելի դարձնում այդ վիթխարի տարածության անսպառ հարստությունները, Սառուցյալ օվկիանոսում ապահովում նավերի անխափան երթևեկությունը:

### 1. ԼԻԴԱՆ

Չորս սյուների կղզին ժամանելու առաջին իսկ օրվանից ես ամբողջովին կլանվեցի աշխատանքով: Իմ օգնականն էր Լիդա անունով մի աղջիկ, որը նոր էր թողել դպրոցական նստարանը: Բացի ռադիոկայան աշխատանքից, ես նրան ծանոթացնում էի մեր տնտեսության հետ, սովորեցնում տիրապետել էլեկտրական և ռադիո սարքավորումներին: Այդ աղջկա համար դժվար էին և՛ նոր պայմանները, և՛ աշխատանքը:

— Երբ ես տանն էի, հիշում եմ, թե որքան մրսկան էի,— ասաց նա ինձ:— Մի անգամ ամբողջ օրը ծարավ մնացի, որովհետև ցրտից ծուլանում էի ջրի գնալ:

Լիդան կարողանում էր հաղթահարել և՛ ցուրտը, և՛ ամեն տեսակի դժվարությունները: Աշխատանքի մեջ նրան նայելիս, մտքովս չէր անցնի, թե նա այդքան ջահել է ու անփորձ: Ցդամարդկանց հետ միասին, բնության տարրերի դեմ մաքառելով, նա բքին ու սառնամանիքին ամեն տեսակ ծանր աշխատանք էր կատարում:

«Որքա՜ն քաջն է» — մտածում էի ես նրա մասին:

Բայց մի անգամ Լիդան կարգին վախեցավ: Ահա թե ինչպես պատահեց.

Նա ռադիոսարքավորումների մոտ հերթապահում էր, երբ ինձ կանչեցին ապարատի մոտ: Լիդան դուրս եկավ խցիկից և հանկարծ... շրջակայքում լսվեց նրա սարսափահար ձայնը.

— Օգնեցե՜ք, արջ... արջ...





Ես վերցրի հրացանն ու նետվեցի դեպի ռադիոխցիկը։ Ինձ հետ միասին հրացանը ձեռքին ձայնի կողմը նետվեց մեր ընկերներից մի ուրիշն էլ։

Եվ ի՞նչ իմացանք...

Լիդան ռադիոխցիկի դուռը բանալով ուզում է դուրս գալ, բայց նրա դիմացն է ելնում սպիտակ արջը։ Աղջիկը ճչում է ու վախեցած փախչում, իսկ արջը դանդաղ քայլերով նրա հետևից մտնում է խցիկը։

Երբ վրա հասանք, արջը գլուխը թափահարելով ու սարքավորումները հոտոտելով մոտենում էր Լիդային։

Մեր երկու կրակոցներով արջը գետին տապալվեց։

— Ա՛յ թե թարմ միս կընթրենք հա՛,— բացականչեց ընկերս։

Մենք երկրով խոնարհվել էինք արջի դեռևս տաք մարմնի վրա։

Լիդայի վախն անցել էր, և հիմա նա խղճահարությամբ նայում էր գեղեցիկ կենդանուն ու շոյում նրա փափուկ մորթը։ Աղջկա աչքերում մինչև իսկ արցունքներ կային։

Ես ակամայից ժպտացի։

Տեսնո՞ւմ եք, ինչպիսին է մեր Լիդան։ Որքան քաջ է, տոկուն, բայց և որքան զգայուն...

Իսկ Լիդան իր արցունքներից ամաչելով, կարմրեց...

## 2. ԻՄ ՓՈՔՐԻԿ ՈՒՍՈՒՑԻՉՈՒՀԻՆ

Հավանաբար ոչ մի տեղ այնքան ուժեղ չեն զգում այն ճշմարտությունը, որ շունը մարդու բարեկամն է, որքան ցուրտ հյուսիսում։

Ես այդ զգացի Չորս սյուների կղզին ժամանելուս առաջին իսկ օրերից։ Շները մեզ օգնում էին որսորդության պահերին, նախազգուշացնում էին սպիտակ արջից՝ հյուսիսի այդ անեղ տիրակալից, բքի, մթան մեջ կողմնորոշում ճանապարհ, և որ կարևորն է, ամենավստահելի միջոցն էին որևէ հեռու տեղ գնալու կամ բեռներ տեղափոխելու համար։

Հենց սկզբից ես որոշեցի սովորել շների հետ վարվելու ձևը։

Բայց ինչպե՞ս սովորել։

Եվ ահա ինձ օգնության հասավ Լենան։ Նա ութ տարեկան մի աղջիկ էր, մեր կայանի պետի դուստրը։

Դրսում 28—30 աստիճանի սառնամանիք էր։

Մենք տաք հագնվեցինք և դուրս եկանք տնից։ Լենան քարշ տվեց-բերեց մի փոքրիկ սահնակ և նրա լծասարքը։ Այդ սահնակը Լենայի համար պատրաստել էր հայրը։ Մենք մոտեցանք շնանոցին։

Շներն սկսեցին կլանչել և քաշքշել կապերը։

— Նրանք այդպես են անում, որովհետև շտապում են,— սկսեց բացատրել Լենան,— աշխատել են ուզում։ Ախր նրանք չեն սիրում պարապություն։

Լենայի ընտրությունն ընկավ շներից երկուսի՝ Տուզիկի և Կուրմյակի վրա։ Նրանց իմ փոքրիկ ուսուցչուհին հատկապես շատ էր սիրում և լծեց որպես առաջապահների։ Հետո Լենան էլի երկու շուն լծեց՝ Առւկային և Կաչին։ Պետք էր տեսնել, թե ութամյա այդ աղջիկն ինչ վարժ ու ճարպիկ էր գործում, ինչպես լավ էր ինձ բացատրում շների լծելու ամեն մի մանրամասնությունը։

Եվ ահա ես ու Լենան ճանապարհորդում ենք։

Լենան վարում է սահնակը, իսկ ես նստած եմ սահնակում և ուշի-ուշով նայում եմ ու լսում նրան։

— Քեռի Արտյոմ,— ասում է նա,— կարևորը շների բնավորությունը լավ իմանալն է։ Ա՛յ, օրինակ, Կուրմյակը շատ հպարտ է։ Նա չի սիրում, որ իրեն վերջում լծեն։ Եթե ուզում ես, որ նա լավ ծառայի, չպետք է նրան վիրավորել։ Իսկ Տուզիկը շատ աշխատասեր է, եթե նրան երկար ժամանակ չլծես, նա կարող է նույնիսկ վշտից հի-



վանդակում: Ա՛յ, նրա հակառակն է Ռուկան: Բայց ոչինչ. Ռուկան էլ վատ շուն չէ, նա դեռ չի սովորել աշխատել, դրա համար էլ մի քիչ ծուլություն է անում:

Նա խոսքն ընդհատեց ու Ռուկայի վրա գոռաց.

— Ռո՛ւկա, պա՛ռկիր...

Ռուկան, որ առանց իր վրա ծանրություն վերցնելու, թույլ-թույլ վազում էր, անմիջապես առաջ մղվեց:

Ես ակամայից ժպտացի: Դուք էլ կժպտայիք, եթե տեսնեիք, թե շները ինչպիսի հնազանդությամբ էին կատարում Լենայի ամեն մի հրամանը:

Բավական էր, որ նա բացականչեր «Բիտս», շները ձախ էին թեքվում, իսկ «Գոսպը» հրամանով դեպի աջ: Երբ Լենան իր մանկական զրնգուն ձայնով բացականչում էր՝ «Տա՜ա՜ա՜», անմիջապես մեխվում էին տեղում:

Այդ օրը ես շատ բան սովորեցի փոքրիկ Լենայից: Երբ մեր ուղևորությունից վերադարձանք, Լենան լրջախոհ դեմքով ինձ նախազգուշացրեց.

— Արտյոմ քեռի, դու արդեն մի քիչ սովորեցիր, բայց տես, առանց ինձ, մենակ սահնակ չքշես, կամ շներին չծեծես, թե չէ հանկարծ մի բան սխալ կանես, շները կփրտնեն, սահնակը շուռ կտան:

Ես գրկեցի իմ ութամյա «ուսուցչուհուն» և ամուր-ամուր համբուրեցի սառնամանիքից կարմրած նրա այտերը...




## ԱՎՍՏՐԱԼԻԱԿԱՆ ԱՆԱՊԱՏՆԵՐԻ ՄԱՐԴԻԿ

Բ. ՌՈՒԺԵՎԱԿ

Ավստրալիայի հայտնագործման ժամանակից, նրա բնիկների թիվը 300 հազարից կրճատվել, հասել է 50 հազար մարդու: Սպիտակ եկվորներին հարկավոր էին արգավանդ հողեր, և նրանք արտաքսում կամ պարզապես ոչնչացնում էին այդ հողերի տերերին:

Մինչև վերջերս էլ, բնիկ ցեղերից շատերը, դեռևս շատ քիչ են ուսումնասիրված: Կան այնպիսիները էլ, որոնց գոյության մասին առաջին անգամ ենք իմանում:

Կենտրոնական Ավստրալիայում ապրող ամենահետամնաց՝ Բաջամանի ցեղի մեջ գտնվելու մասին իր հաշվետվության ամերիկյան մամուլում Հարրի Ռոսկոլենկը գրում է հետևյալը.

«Բաջամանի՝ ցեղի մարդիկ ոչինչ չեն ցանում, ոչինչ չեն աճեցնում, չեն արտադրում: Նրանք ապրում են, այնպես, ինչպես ապրում էին իրենց նախնիները հազարավոր տարիներ առաջ: Բաջամանի ցեղն իր գոյության համար օգտագործում է միայն այն, ինչ տալիս է բնությունը»:

Ժուռնալիստը պատրաստվում էր այդ ցեղի կյանքից ֆիլմ նկարահանել, բայց շուտով համոզվեց, որ այդ բանն անելն այնքան էլ հեշտ չէ: Երբ նա փորձում հարմարեցնել կինոկամերան, իսկույն նրա վրա սուրայլին նետերը, իսկ գլխի վերևով թռավ բումերանգը: Միայն մագնիտոֆոնի բանկամր իրենց գրությունը, այնպես նրա հաշվարկները և կինոխցիկները ընդմիշտ կմնային ...պատում... Ավստրալիացիները



տարածքից արտաքսեցին, քանի որ նման երկաթյա առաջին անգամ էին տեսնում: Բայց այդ, հենց այդ ժամանակ սկսեց անձրև տեղալ: Բաջամանիներն անձրևը երկնային մեծ պարգև համարեցին, իսկ Հարրի Ռոսկոլենկը, իր համար անսպասելի կերպով, համարվեց նրանց փրկիչը:

Վերջերս ավստրալիական գիտնականները հնագիտական արշավախումբ կազմակերպեցին: Արշավախմբի մասնակիցները Կենտրոնական Ավստրալիայում հայտնաբերեցին մի նոր ցեղ՝ Պինտուբի: Սա նույնպես շատ հետամնաց ցեղ է: Այդ ցեղն ապրում է փոքրիկ խմբերով հազվագյուտ քառակուսի կիլոմետրից ավելի տարածության վրա: Սրանք, ի տարբերություն Բաջամանի ցեղի, թույլ ավեցին ուսումնասիրել իրենց:

Նրանք վարում են այնպիսի կյանք, ինչպիսին վարում էին քարե դարի առաջին անապատաբնակները: Նրանք մինչև օրս կրակն ստանում են շփման միջոցով և այդ կատարում են չափազանց արագ ու համարձակ՝ ընդամենը մեկ-երկու րոպեում: Պինտուբիները, բացի ազդրակապերից, հագուստներ չեն կրում: Պարանոցներից կախված են մարդկային ատամներից կազմված մանյակներ: Նրանք սնվում են մկներով, սողուններով, մողեսներով ու միջատներով: Արգերը, ճիճուները, խխունջները խորովում են:

(«Վոկրուգ սվետա» ամսագրից)

# Ինչն է շատ...

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Ա. ԱՋԻԶՅԱՆԻ



— Հովիկ, ի՞նչ կա ամենից շատ
Անտառում.
Ասա, ի՞նչն է այնտեղ հողը
Զարդարում:
Երկար-բարակ չմտածեց
Մեր տղան,
Աչքը թարթեց, այսպես տվեց
Պատասխան.
— Պարզ է, թե ինչ, անտառում կա
Շատ պազան,
Հողի զարդն էլ՝ ծաղիկներն են
Զանազան:
— Չէ՛,— ասացի,— դու չե՞ս եղել
Անտառում.
Ի՞նչն է այնտեղ ամեն քայլիդ
Պատահում:
— Փա՛յտը, փա՛յտը,— ճչաց տղան,—
Փայտն է շատ.
— Մոտենում ես,— ծիծաղեցի,
Ի՞նչն է շատ:
— Ծա՜ռ... հիշեցի,— կանչեց տղան,
Հասկացավ...
Անտառ ասում, մոռանում էր
Աթել ծառ:
— Որ հասկացար, ասա, ծովում
Ի՞նչն է շատ.
— Ծովում — ձուկը, չէ, չէ, ծովում
Ջուրն է շատ...

— Ապրես, Հովիկ... Պարզ հարցեր են,
Եվ սակայն,
Նախ մտածիր, հետո տուր ճիշտ
Պատասխան:

## ԱՐԱՐԱՏ

*Ամեն օր մեր աչքերի առաջ է վեհաշուք Արարատը: Նրա մեծ գագաթի բարձրությունը հասնում է 5156 մետրի: Արարատի արտակարգ գեղեցկությունը հմայում է բոլորին, մանավանդ նրանց, ովքեր առաջին անգամ են տեսնում Արարատը: Հայտնի երկրաբան, ճանապարհորդ Մ. Վագները հիացած Արարատի գեղեցկությամբ, գրում է. «Մինչև հիմա Եվրոպայի, Աֆրիկայի և Ասիայի մեջ ինչ ահեղ ու նկարչական տեսարաններ որ տեսել եմ, չեն կարող համեմատվել Հայաստանի այս լեռնային հոյակապ տեսարանի հետ: Նույնիսկ Կովկասն էլ զիջում է նրանց»:*

*Պարզ և պայծառ օրերին Արարատի գագաթից սքանչելի տեսարան է բացվում: Հյուսիսում 140 կիլոմետր հեռավորության վրա, սպիտակ կախված ամպի նման երևում է Էլբրուսը: Հեռու-հեռվում երևում են միգապատ Սև և Կասպից ծովերը: Երևում են Հայաստանի, Իրանի և Թուրքիայի լեռնաշղթաները, ինչպես մի օվկիանոս, որի լեռնացած ալիքները փոթորկի պահին կարծես թե քարացել են:*

## ԱՄԵՆԱՄԵԾ ԳԼՈԲՈՒՍԸ

Դանիական Միդելֆարտ քաղաքի շրջակայքում կառուցված էր գազգոլդեր: Դա ահագին ամբար է լուսատու գազ պահելու համար: Պողպատյա թերթերից շինված այդ կառուցվածքը չափազանց փչացնում էր շրջավայրի տեսքը:

Քաղաքային վարչությունը որոշեց գազգոլդերը ներկել: Նա ուներ գնդի ձև, ուստի այն վերածվեց հսկայական գլոբուսի: Նկարեցին նրա վրա ծովեր, օվկիանոսներ, մայր ցամաքներ և կղզիներ:

Այժմ այդ գազգոլդերը աշխարհիս խոշորագույն գլոբուսն է:

Նա երեք հարկանի տնից բարձր է, ունի 100 մետր տրամագիծ և պարունակում է 100 հազար խ. մ. խտացրած գազ:

—

## ՌՈԲԻՆԶՈՆԻ ԿՂԶԻՆ

Դուք, իհարկե, կարդացել եք «Ռոբինզոն Կրուզոյի արկածները» և, անկասկած, ձեզնից շատերին հետաքրքրում է այն հարցը, թե Ռոբինզոնը իրոք գոյություն ունեցե՞լ է, և եթե այո, ո՞րտեղ է գտնվում նրա կղզին: Գրքի հիմքը կազմում են Սելկիրկ նավաստու կյանքին վերաբերող ստույգ տեղեկությունները, բայց հերոսի անունը և կղզու տեղը փոխված է:

1704 թ. շոտլանդացի նավաստի Ալեքսանդր Սելկիրկին նավի կապիտանին չենթարկվելու համար աքսորում են Չիլիի ափերին գտնվող Խուան-Ֆերնանդեսի անմարդաբնակ կղզիներից մեկը: Սելկիրկի մոտ թողնում են մի քանի հրացան, մի քիչ վառոդ, կացին և մի դանակ: Երբ վառոդը վերջանում է, Սելկիրկը սովորում է դանակով և կացինով գազաններ որսալ: Նա կրակ է ստանում շփման միջոցով: Հագուստը կարում է կենդանիների մորթիներից: Այսպես, նա ապրում է այդ կղզում ընդամենը հինգ տարի:

Պատահական մի նավ Սելկիրկին բերում է Անգլիա:

Շատ հետաքրքիր է այդ կղզու պատմությունը: 16—17 դարերում այդ կղզում թաքնվում էին ծովահենները:

1715 թվականին կղզում բնակություն են հաստատում իսպանացիները: Բայց շուտով այդ բնակավայրը երկրաշարժից կործանվում է:

«Ռոբինզոնի կղզին» այժմ քարքարոտ է ու ամայի.

Արևադարձային հեղեղումները և ամեհի քամիները արագ քայքայում են կղզին: Շուտով այդ կղզին բոլորովին կանհետանա:



# Հայաստանի հրաբուխները և հանքային ջրերը

ՀԱԿՈԲ ՋԱՎՐԻՇՅԱՆ

Մարդուն շատ վաղուց է հետաքրքրել մեր երկրագնդի կազմավորման, նրա մակերևույթի ծալքերի ու շերտերի առաջացման պատմությունը:

Այն հեռավոր ժամանակաշրջանից, երբ գազանման կամ փոշենման նյութերից կազմվում էր երկրագունդը, չի մնացել համարյա ոչ մի վկայություն: Բայց դարերի ընթացքում գիտության ձեռք բերած հարուստ տվյալները թույլ են տալիս պարզելու, թե երբ, ինչպես և ինչ ուժերի ազդեցությամբ է առաջացել երկրի մակերևույթը:

Երկրի լեռնակազմական պրոցեսների վրա խիստ ազդել են երկրաշարժերը և հրաբխային արտավիժումները:

Հրաբխային լավան արտահոսել է, ճեղքելով կեղևի պատռվածքի ամբողջ երկարությամբ, կազմելով հրաբխային շղթաներ և լավայի դաշտեր: Երբեմն առանձին կենտրոններից հրաբխային կոներ են գոյացել: Երկրագնդի մի հատվածը՝ Հայկական լեռնաշխարհը հայտնի է մակերևույթի բազմազանությամբ: Այստեղ ամենուրեք տեսնում ենք բարձրաբերձ լեռնաշղթաներ, գեղատեսիլ ձորեր, ընդարձակ սարահարթեր: Նրանք առաջացել են հեռավոր անցյալում, լեռնային ծալքավորումների ժամանակ: Նրանցից մի զգալի մասը հրաբխային ուժեղ ժայթքումների հետևանք է: Հայկական լեռնաշխարհի ձևավորման գործում մեծ նշանակություն են ունեցել երկրի կեղևի բազմաթիվ կոտրվածքներն ու խզումները: Հայկական լեռնաշխարհում այժմ հանգած, հզոր շիրառավոր հրաբուխներ և վահաններ են հայտնի: Դրանցից ամենաբարձրը վեհաշուք Արարատն է: Սովետական Հայաստանի հրաբխային սարահարթերի համարյա կենտրոնում, բազմել է գեղատեսիլ Արագածը, որի չորս սուր գագաթները հնագույն խառնարանի կենդանի վկաներն են: Նրանց միջև ընկած լեռան խառնարանը 400 մետր խորություն ունի: Հրաբուխների հետևանքով



Դիլիջանի բնության տեսքը:

մի հսկա հատած կոճի տեսք է ստացել Արտի լեռը: Առավել բնորոշ ձևերով աչքի են ընկնում Գեղամա լեռները: Նրանց կատարներով ձգվում են բազմաթիվ հանգած հրաբուխների կոներ ու գմբեթներ: Լավայի ծածկոցներով և տեղ-տեղ սրածայր ժայռակտորներով ու բազմաթիվ հրաբխային գոյացումներով հայտնի են Վարդենիսի լեռները: Հայկական լեռնաշխարհում աչքի են ընկնում Սիփանը, Նեմրութը, Ալաջան և այլ բազմաթիվ հրաբխային կոնաձև գագաթներ: Այս հրաբուխները գործել են հեռավոր անցյալում: Գագաթների մոտ ժայթքած գազի ու գոլորշու ամպեր են գոյացել: Մխացել են հրաբուխները, երբեմն գիշերները գագաթներից հրացոլք է երևացել: Եվ երբ երկրի ընդերքից պայթյունով ու դղրդյունով դուրս են շպրտվել շիկացած քարի բեկորներ, մոխրով ու փոշով հագեցած անձրև է տեղացել: Կայծակի շանթերը ճեղքել են խավարը: Խառնարաններից դուրս է հորդել շիկացած հրահեղուկ լավան, որը հրավառ գետի նման հոսել է հրաբուխի լանջով, ճանապարհին ամեն ինչ այրել ու տակով արել: Հրաբխային օջախներից արտավիժված վիթխարի հոսքերից և զանազան տիպի փխրուն արտաբերվածքներից առաջացել են հայկական հսկայական բազալտային ծածկոցները և բազմաթիվ տեսակի տուֆերի փռվածքները: Հայտնի են մոտ հիսուն տեսակ ապառներ: Նրանց մեծ մասը արդյունաբերական և շինարարական նշանակություն ունի: Ապառներից Հայաստանում հայտնի են Անիի պեմզայի տիպի դեղնավուն տուֆերը, Երևանի, Լենինականի սև և կարմիր տուֆերը և նրանց զանազան տեսակները: Բազալտները տարածված են Հրազդան, Դեբեդ, Ազատ գետերի հովիտներում:

Հրաբուխների հետևանքով առաջացել են Սյունիքի, Եղվարդի, Կոտայքի, Լոռու, Շիրակի, Վանանդի (Ղարսի), Ալաշկերտի, Մշո հարթավայրերը: Հայկական լեռնաշխարհը հանգած հրաբուխների մի երկիր է, բայց մինչև այժմ էլ առանձին հատվածներում կյանքի նշաններ ցույց տվող ծխացող հրաբուխներ կան: Արևմտյան Հայաստանում գտնվող Թոնդորեքի խառնարանից երբեմն դուրս են գալիս ջրային գոլորշիներ և ծխի քուլաներ:

Հայաստանում կան մի շարք երիտասարդ հրաբուխներ, որոնք գործել են պատմական ժամանակաշրջանում: Օրինակ, հայտնի է Հայոց ձորի (Եղեգնաձորի շրջան) Դալիկ հրաբուխը, որի լավաները՝ ըստ հայ պատմիչ Կիրակոս Գանձակեցու, հնում ծածկել են Մոզ քաղաքը: Հայաստանում այժմ էլ շարունակվում են լեռնակազմական պրոցեսները: Դրա վկաներն են բազմաթիվ երկրաշարժները, որոնցից մի մասը կործանարար ազդեցություն է ունեցել:

1840 թվականին Արարատի լանջին գտնվող Ակոռի գյուղի կործանումը և քարի ու ցեխի տակ թաղվելը, թերևս հետևանք է հրաբխային տիպի երկրաշարժի:

Հրաբխային ժայթքման ժամանակ խառնարաններից և նրանց շրջակայքի ճեղքվածքներից դուրս են հոսում գազեր ու գոլորշու շիթեր, որոնք խառնվում են ստորերկրյա ջրերի հետ, վերածվելով տաք հանքային ջրերի: Դրանց մեջ հանքային բուժիչ հատկություններ ունեցող նյութեր են լուծված լինում:

Պարբերական են եռացող աղբյուրները, որոնք հեյզերներ են կոչվում: Նրանք իրարից տարբերվում են ջերմաստիճանով և քիմիական բաղադրությամբ: Պատահում են նաև տաք լճեր և եռա-



ցող ցեխի փոսեր: Նրանց ջերմաստիճանը հասնում է մի քանի տասնյակ աստիճանի:

Հանքային ջրերը մինչև հիմա էլ շարունակում են դուրս գալ գետնի տակից, թեև ստորերկրյա զանգվածներն արդեն սառել են, և ժայթքում-ները դադարել: Հայկական լեռնաշխարհում տի-պիկ հեյզերներ գոյություն չունեն: Մեզ մոտ հայտնի են այսպես կոչված ջերմուկները կամ թերմալ աղբյուրները: Նրանք բարձր ջերմաստի-ճանի տարբեր հանքային նյութեր պարունակող բուժիչ ջրեր են: Հայտնի են նշանավոր Ջեր-մուկի, Դվինի, Արտաշի և այլ վայրերի տաք աղբյուրները: Կան և հրաբխային հանգած օջախ-ների հետ կապված սառը ածխաթթվային կամ այլ գազերի խառնուրդներ պարունակող բազմաթիվ աղբյուրներ: Դրանք ժողովրդի մեջ ստացել են թթու ջուր անունը: Օրինակ՝ Արզնու, Դիլիջանի, Հանքավանի և այլ հանքային ջրերը: Այդ վայրե-



Արզնու առողջարանը:

Լուսանկարները՝ Գ. ԶՈՒԼԱԴՅԱՆԻ

րում կառուցվել են բարեկարգ առողջարաններ, որ-տեղ բազմահազար աշխատավորներ են բուժվում ու հանգստանում:



## ԱՇԽԱՐՀԻ ՇՈՒՐՋԸ ՈՒԹ ՐՈՊԵՈՒՄ

Դանիացի հյուսն Քրիստիան Պոուլսենի մեջ այնքան վառ էր մնացել երիտասարդ տարիների ճանապարհորդական կիրքը, որ ծերության օրերին նա հնարեց մի միջոց 8 րոպեում աշխարհի շուրջը պտտվելու համար:

Մի քանի տարի շարունակ նա քարեր էր հավաքում և լճակի սառույցի վրա սարքում ամբողջ ցամաքներ: Գարնանը, երբ հալ-վում էր սառույցը, քարերը իջ-նում էին ջրի հատակը:

Վերջապես լճի վրա երևացին քարե հինգ աշխարհամասերը: Չձևավորվեց միայն Անտարկտի-դան: Այժմ ոչ մի բան չէր խան-գարում ծեր հյուսնին ամեն օր երկրագնդի շուրջը ճանապարհոր-դելու համար:

Շուտով գտնվեցին այդպիսի զբոսանքների շատ սիրահարներ և երեք տարվա ընթացքում Կլեյ-տրուպ գյուղը այցելեցին մոտ 100 հազար տուրիստներ: Մաս-շտաբների որոշ անճշտությունը չէր վրդովում «ճանապարհորդ-ներին» և չէր խանգարում տեղի դպրոցականներին՝ աշխարհագրա-կան գիտելիքներ ձեռք բերելիս:






# ՎԵԶՈՒՎԻ ՓԵՇԵՐՈՎ

ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

(ճարտարապետական գիտությունների թեկնածու, դոցենտ)

Մեր հյուրանոցի առջև վաղ առավոտյան նորից երեխաների բազմություն է հավաքվել: Ավտոբուսն արդեն մեզ է սպասում, իսկ սրանք իմանալով, որ սովետական տուրիստներ ենք, ուզում են տեսնել մեզ և, իհարկե... հուշանվերներ ստանալ: Այդ ցանկությունը անշուշտ բնական է բոլոր երկրների երեխաների համար, սակայն Նեապոլի երեխաների մոտ այն ավելի բուռն է դրսևորվում:

Անասելի երջանիկ է նա, ով կարողանում է հուշանվերը կորզել... ոչ թե նվիրողի, այլ դեպի հուշանվերը պարզած բազմաթիվ ձեռքերից:

— Սինյո՛ր, Սինյո՛ր...— աղերսում են նրանք և երբ հուշանվերը որևիցե մեկի ձեռքն է ընկնում, աշխատում են իրարից խլել, երբեմն գետին են ընկնում, թավալվում, մինչև որ մեկն ու մեկին հաջողվում է տիրանալ:

Վերջապես հրաժեշտ ենք տալիս շարաճճիներին, նստում ավտոբուս և շարժվում ծովափնյա այս գեղեցիկ քաղաքով, որի տարբեր բարձունքներից մերթ ընդ մերթ երևում է Վեզուվը: Մեքենան դուրս է գալիս դեպի Պոմպեյ տանող ճանապարհը և կանգ առնում: Այստեղ մեր ավտովարորդը իջնում է, ինչ-որ վճարում կատարում, որից հետո մենք շարունակում ենք մեր ճանապարհը: Ինչպես պարզվում է, Նեապոլ-Պոմպեյ ճանապարհը մասնավոր է: Ճանապարհի տերը հարկ է վերցնում երթևեկող մեքենաներից: Հարստանալու ինչ միջոցներ ասես, որ չեն գտնում ճարպիկ կապիտալիստները:

Ավտոբուսն անցնում է խաղողի այգիների ու բանջարանոցների միջով, Նեապոլի արգավանդ ծովափով: Մեր ուղեկիցը տեղեկություններ է հաղորդում Վեզուվի փեշերին ընկած բնակավայրերի մասին: 1944 թվին տեղի է ունեցել գործող հրաբուխի վերջին ժայթքումը, նորից մեծ վնասներ հասցնելով իր փեշերին ընկած բնակավայրերին, իսկ Վեզուվի բարձրությունը... կրճատվել է:

— Այս բնակավայրը, շարունակում է նա, իր գոյության ընթացքում 14 անգամ կործանվել ու վերակառուցվել է, այս բլուրը գոյացել է մոտ 250 տարի սրանից առաջ: Ընդերքի ուժերը մշտապես ձևափոխություններ են առաջացնում անհանգիստ լեռան փեշերին:

Ահա անցնում ենք Հերկուլանումով, որը Պոմպեյի հետ միասին մ. թ. 79 թվին ծածկվել էր լավայով և այստեղի մյուս բնակավայրերի պես նորից բարձրացել մոխիրների տակից:

Մի քիչ այն կողմ Վեզուվի փեշերին թառած է Տոռե Գրեկի գյուղը, իսկ ձախ կողմում բարձրանում է մշտապես ծխող ու անհանգիստ լեռը:

Վերջապես կանգ ենք առնում մի փոքրիկ հրապարակում: Մեզ ասում են, որ դա Պոմպեյն է, շտապում ենք իջնել ավտոբուսից:

Մենք այս մեռյալ քաղաքն ենք մտնում Պորտա Մարինա (ծովային դուռ) կոչվող դարպասով, բացատրում է մեր ուղեկիցը:— Կար ժամանակ, երբ այս դարպասին մոտենում էին նավերը, իսկ այժմ ծովը հեռու է մոտ մեկ կիլոմետր:

Բավականաչափ լավ պահպանված կամարային դարպասով ներս ենք մտնում Պոմպեյ և առաջին հերթին դիտում մուտքի մոտ գտնվող թանգարանը: Այստեղ ցուցադրվում են պեղումների հետևանքով բացված բազմաթիվ իրեր, գործիքներ, ամանեղեն, արվեստի գործեր, ճարտարապետական բեկորներ.

Այդ բոլորը գաղափար են տալիս երբեմնի բարգավաճող քաղաքի ու նրա բնակիչների կյանքի, սովորությունների ու արվեստի մակարդակի մասին: Սակայն մոտ 1900 տարի առաջ տեղի ունեցած ահավոր ողբերգության պատկերը կարծես դրոշմված է ջղաձգ-

գորեն փաթաթված այն մարդու մարմնի վրա, որ հանված է մոխրի հաստ շերտի տակից։

Երբ մ. թ. 79 թվականի օգոստոսի 24-ին այստեղ մռնչաց Վեզուվը, և ցնցվեցին նրա փեշերը, շիկացած լավայի հզոր հորձանքը հոսեց լեռն ի վար, ճանապարհին այրելով ու ոչնչացնելով ամեն ինչ։

Վեզուվի փեշերին ընկած Պոմպեյի, Հերկուլանումի սարսափահար բնակիչները գլխապատառ փախչում էին, ով ինչպես կարող էր։ Հռոմեական գրող և Պոմպեյի աղետի ականատես Պլինիոս Կրտսերի մոտ կարող ենք հանդիպել այդ տագնապալից պահի նկարագրությանը։ Ո՞վ չի հիշում ռուս նկարիչ Կ. Բրյուլովի «Պոմպեյի վերջին օրը» հանրահռչակ կտավը, որի վրա պատկերված է այդ մեծ ողբերգությունը։

Լավայի 8—9 մետրանոց մոխրաշերտով ծածկված այս քաղաքի պեղումները սկսվեցին 18-րդ դարում։

Դուրս ենք գալիս թանգարանից և ուղևորվում դեպի Պոմպեյի հասարակական կենտրոնը՝ գլխավոր ֆորումը։ Քարով սալահատակված ընդարձակ հրապարակի շուրջը տեղադրված էին հասարակական պաշտամունքային տարբեր շենքերը՝ Բազիլիկան, հյուրատան և շուկայի շենքերը, Յուպիտերի



Պոմպեյ, բազիլիկա։

Լուսանկարները՝ հեղինակի

և Ապոլլոնի տաճարները։ Այժմ դրանց ավերակները և մարմարակերտ բեկորներն են մնացել։ Այս հոյակապ ֆորումը բազմաթիվ մրցումների ու խաղերի, պատմական կարևոր դեպքերի վկան է եղել։

Յուպիտերի տաճարի կողքին մի կամար է բացվում դեպի ֆորում։ Նրա տակով դուրս ենք գալիս սալահատակված փողոցը և շարժվում դեպի վեր։ Այստեղ մենք պետք է տեսնենք Պոմպեյի մեծահարուստներին պատկանող բազմաթիվ բնակելի տներից մեկը՝ Վետիի տունը։ Աջ մեծ դռնով՝ ուղեկիցը մեզ տանում է դեպի նախասրահը, ապա դորիական սյուներով շրջապատված ատրիում՝ բակը, որը վերականգնված է իր նախնական տեսքով, կանաչազարդված։ Մարմարե բազմաթիվ արձաններ շուք են տալիս նրա տեսքին։ Ատրիումի շուրջը, ձյունի պես ճերմակ մարմարյա սյուների հետևում դասավորված տարբեր տեսակի սենյակները հարուստ են բազմաթիվ որմնանկարներով, որոնցով այնքան հարուստ էր Պոմպեյը։

Վետիի տնից ոչ հեռու գտնվում է Պոմպեյի հին պանդոկներից կամ թերմերից մեկը։ Շատ հետաքրքրական են և լավ պահպանված նրա լողարանները ու սպասարանները՝ հարդարված մարմարով ու խճապատկերներով։

Անցնում ենք Պոմպեյի մյուս հասարակական կենտրոնը՝ եռանկյունաձև ֆորումը։ Այստեղ են գտնվում Պոմպեյի կարևորագույն շենքերից՝ «մեծ» և «փոքր» թատրոնները։ Առաջինը կառուցվել է մ. թ. ա. 3—2-րդ դարերում և վերակառուցման է ենթարկվել առաջին դարում։ Հունական տիպի կիսաշրջանաձև բացօթյա թատրոնը տեղավորում էր մինչև 5000 մարդ։ Նրա կողքին գտնվող փոքր կամ Օդեոն կոչվող թատրոնը կառուցվել է մ. թ. ա. առաջին դարում, երաժշտական միմիկական ներկայացումների համար ու տեղավորվում էր 1500 մարդ։

Սակայն ավելի հոյակապ է Պոմպեյի ամֆիթատրոնը, որը նույնպես կառուցված է 1-ին դարում, քաղաքի արևելյան ծայրին, պարիսպներից ներս։ Ամֆիթատրոնը տեղավորում էր մինչև 15 հազար մարդ։ Այն ժամանակներում միայն ստրուկների տաժանակիր աշխատանքով էին իրականացվում այդպիսի հսկայական կառուցվածքները։ Այդպիսի խոշոր հասարակական շենքերի շինարարությունը առանձնապես ծավալվում է հռոմեական ստրկատիրության ծաղկման շրջանում, երբ կառուցվում է Հռոմի հռչակավոր Կոլիզեյը կամ Ֆլավիուսների ամֆիթատրոնը իր տրիբունաներով, 50 000 մարդու տարողությամբ։

Որքա՜ն ջանք ու աշխատանք է մարմնավորում այս անկենդան քաղաքը, որի ավերակներով հրապուրված քայլում ենք արագ, դիտում ամեն մի հուշարձան, կանգ առնում բարձրարվեստ ամեն մի բեկորի մոտ։ Սակայն մեր ժամանակը սահմա-

նափակ է, մեզ խնդրում են շտապել:

— Կարծես կինոժապավեն ենք դիտում,— կատակում է ընկերներիցս մեկը,— այսպես էլ արագ դիտե՛լ կլինի:

Քաղաքի դարբասների մոտ մեզ ընդառաջ են գալիս երկու իտալացի, որոնք տանում են պատգարակին բազմած մի մարդու: Դա ամերիկացի մեծահարուստ է: Պոմպեյի փողոցները ժամանակակից տրանսպորտի համար պիտանի չեն, այստեղ չեն կարող երթևեկել ավտոմեքենաներ, և ամերիկացի տուրիստը օգտվում է «երթևեկության» այս միջոցից:

Դուրս ենք գալիս Պորտա Մարինա դարբասից: Տեսածի տպավորությունը այնքան հախուռն է ու առատ, որ կարծես չի ամփոփվում գլխումս:

Որքա՜ն եմ կարդացել, որքա՜ն եմ լսել ու խոսել Պոմպեյի մասին: Իսկ այսօր տեսա իմ աչքերով 2000 տարի սրանից առաջ ապրող քաղաքը:

Որոշ հուշարձաններ այժմ գոյություն չունեն: Վերջին պատերազմի ընթացքում, հատկապես պատերազմի վերջում Իտալիան շատ է տուժել: Գերմանա-ֆաշիստական ռմբակոծիչները չեն խընայել ոչ միայն քաղաք ու գյուղ, նրանց խաղաղ բնակիչներին, այլև վայրագությամբ վնասել են այնպիսի աշխարհահռչակ տեսարժան մի վայր, ինչպիսին Պոմպեյն է:

Այսօրվա էքսկուրսիայի միայն մի մասն է ավարտված: Մեզ դեռ սպասում է շատ հետաքրքրական ճանապարհորդություն անկրկնելիորեն գեղեցիկ մի ճանապարհով, որը գալարվելով պտույտ է կատարում Նեապոլյան թերակղու շուրջը, Միջերկրական ծովի գեղատեսիլ ափերով:



# ՔԱՄԻՆ

*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ*



Պատահում է, երբ որ մեկը
Ստում և չի ամաչում,
Մենք ասում ենք՝ ինչ անպետքն ես,
Ի՜նչ ես քամու պես փչում...

Բայց, արի տես, իրականում
Այդպիսին չի խենթ քամին,
Նա և՛ բարի գործ է անում,
Ե՛վ ներթարկվում մեր կամքին։

Ա՛յ, լողում է ծովի՝ նրա
Առագաստը մեծավոր,
Հենց քամին է տանում նրան
Դեպի ափերն հեռավոր։

Կամ բաց դաշտում կա քամաղաց,
Այստեղ ջուրը չի գործում,
Քամին ոսկի ցորենն առած
Ալյուրի է վերածում։



Իսկ ջրհորից ջուր հանելիս,
Երբ անիվին կան թևեր,
Քամին նրան ուժ է տալիս՝
Դույլով ջուրը քաշում վեր։

Փոշոտում է ծաղիկներին,
Սերմը առնում ու թռչում,
Մեկ էլ տեսար՝ ժայռի ծայրին
Կանաչ մի բույս է անում...

Տոթ օրերին նեղվում է մարդ,
Զով է բերում մեզ քամին,
Սութ ամպերն է քշում հանդարտ
Կամ օրորում հասկերին։



Ու՞ր ասես որ նա չի հասնում,
Էլ արևմուտք, արևելք,
Մեկ շրջում է ցուրտ հյուսիսում,
Մեկ հարավում փնտրում ելք։

Եվ թռչում է նա ամեն օր,
Չափում ծովեր, հանդ ու սար,
Որ աշխարհում մարդիկ բոլոր
Օդը շնչեն հավասար...

Փոքրի՛կ տղա, երբ մեծանաս
Ու ծերք բերես գիտություն,
Մի օր էլ դու՝ քամուն կտաս
Նոր ուժ ու նոր ուղղություն։

# ԻՆՉՊԵ՞Ս ԵՆ ԱՌԱՋԱՑԵԼ ԱՅՍ ԱՆՈՒՆՆԵՐԸ

Հնում փյունիկեցիները հիմք ընդունելով արևի ծագումն ու մայր մտնելը՝ Միջերկրական ծովից դեպի արևելք ընկած երկրներին անվանել են «Ասու» (լույս), իսկ դեպի արևմուտք ընկած երկրները՝ «Էրեբ» (խավար):

Նույն փյունիկեցիները Աֆրիկե մայրցամաքների անունով «Աֆրիցինների երկիր» են անվանել Աֆրիկայի հյուսիս արևմտյան մասը:

Հետագայում հույն պատմաբան և փիլիսոփա Հերոդոտը բնակելի ցամաքը բաժանում է երեք աշխարհամասերի և նրանց տալիս Եվրոպա, Ասիա, Աֆրիկա անունները, հիմք ընդունելով փյունիկյան «Էրեբ», «Ասու» և «Աֆրիցի» բառերը:

Հին հույն փիլիսոփա Արիստոտելի կարծիքով, որպեսզի երկիրը չշրջվի, պետք է նրա հյուսիսային և հարավային կիսագնդերում ջրային և ցամաքային տարածությունները հավասար լինեն: Այս տեսությունից ելնելով, Արիստոտելը հարավային կիսագնդում ենթադրեց անհայտ ցամաքի գոյությունը և այն կոչեց «Տերրա Աուստրալիս Ինկոգնիտա» (անհայտ հարավային ցամաք):




1606 թվականին հոլանդացիները հայտնագործեցին Ավստրալիայի արևմտյան մասը և անվանեցին Նոր Հոլանդիա: Ավելի ուշ, 1738 թվականին Ջեյմս Կուկը հայտնագործեց ամբողջ Ավստրալիան և կարծելով, որ դրանից հարավ այլևս ցամաք չկա, այն անվանեց Ավստրալիա՝ հենվելով «աուստրալիս» (հարավային) բառով:

Հնդկաստանն իր անունը ստացել է Ինդոս գետից, իսկ գետի անունը առաջացել է սանսկրիտերեն բառից, որը նշանակում է «ոռոգող գետ» (Սինդու բառից՝ ոռոգել): Պարսկական մակագրություններում Սինդուն վերանվանվել է Հինդու, որը և հետագայում




հույներն իրենց հերթին դարձրել են Ինդս՝ Ինդոս:

Վիետնամը գեղատեսարան երկիր է Ասիայում, Հնդկաչին թերակղզում, անունը անամական է և նշանակում է «հարավի երկիր» Վիետ՝ երկիր, նամ՝ հարավ:

Հիմալայը ամենաբարձր լեռնային սիստեմն է երկրագնդի վրա: Անունը՝ Հիմա՝ ձյուն, ալայա՝ բնակարան, այսինքն «ձյան բնակարան»:

Արկտիկա: Երկրագնդի հյուսիսային բևեռային շրջանը կոչվում է Արկտիկա: Արկտիկա անունը կապված է Մեծ Արջ համաստեղության հետ, որը հունարեն կոչվում է արկտոս: Այդ համաստեղության տակ է գտնվում Արկտիկան: Հարավային բևեռի շրջանը Արկտիկայից տարբերելու համար անվանում են Անտարկտիկա, որը գտնվում է Արկտիկայի հակառակ բևեռում: Հունարեն անտի բառը նշանակում է հակառակ, դեմ: Իսկ ցամաքը կոչվում է Անտարկտիդա: Այն հայտնագործել են ռուս ծովագնացներ Բելինգսհաուզենը և Լազարևը 1821 թվականին:

Բայկալ լիճը գտնվում է Արևելյան Սիբիրում: Եվրոպայում և Ասիայում քաղցրահամ ջուր ունեցող ամենամեծ և երկրագնդի ամենախոր լիճն է: Այդ անունը համաձայն նոր տվյալների, առաջացել է բուրյաթական «Բայկալ-դալայ» բառերից, որը նշանակում է բնական ծով:



## ՄԵՐ ԵՐԿԻՐԸ

Երկրի մակերեսը հաշվվում է 510 մլն. քառ. կմ.: Երկրի մակերեսի 360 մլն. քառ. կմ պատված է օվկիանոսներով և ծովերով:

Երկիրը 1.310 հազար անգամ փոքր է արևից: Բևեռների միջև եղած տարածությունը հավասար է 12712 կմ-ի:

Երկրագունդը հյուսիսային և հարավային կիսագնդերի բաժանող երևակայական գիծը (հասարակածը) հավասար է 40.076 կմ.:

Երկիրը արևից հեռու է մոտավորապես 150 միլիոն կմ.:

Աշխարհամասերը ըստ տարածության

| | | | | |
|---|---|---|---|---|
| Եվրոպա . . | 10 | մլն. | քառ. | կմ. |
| Ասիա . . . | 44 | » | » | » |
| Աֆրիկա . . | 30 | » | » | » |
| Ամերիկա . . | 42,8 | » | » | » |
| Անտարկտիդա | 14 | » | » | » |
| Ավստրալիա և Օվկիանիա | 8,8 | » | | |






5 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 1889 թ.

70 տարի առաջ ավարտվեց Կենտրոնական Աֆրիկայի մեծ հետազոտող՝ անգլիացի Հենրի Ստենլիի վերջին ճանապարհորդությունն Աֆրիկայում: Նրա ճանապարհորդությունները վերջացան աշխարհագրական մեծ հայտնագործումներով: Կենտրոնական Աֆրիկայի քարտեզը լրացվեց մինչ այդ անհայտ շրջաններով:

1871 թվականին Ստենլին Ամերիկյան կառավարության առաջադրանքով մեկնում է Աֆրիկա՝ անհայտ կորած իր հայրենակցին, Աֆրիկայի նշանավոր հետազոտող Դավիթ Լիվինգստոնին փնտրելու: Մեծ դժվարություններ հաղթահարելով, Ստենլին գտնում է Լիվինգստոնին, բայց նրան չի հաջողվում համոզել վերջինիս հայրենիք վերադառնալ: Լիվինգստոնը չէր հասել իր նպատակին. Նա դեռևս չէր հայտնաբերել Նեղոս գետի ակունքները: Այդ պատճառով էլ Ստենլին մենակ է վերադառնում և հայրենիքում լսում է Լիվինգստոնի մահվան լուրը:





Վերջին անգամ 1874 թվականին Ստենլին ճանապարհորդում է Աֆրիկայում և շարունակում ու ավարտում Լիվինգստոնի հետազոտությունները: Նա հայտնաբերում է Նեղոս, ինչպես նաև Կոնգո գետերի ակունքները:

10 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 1939 թ.

20 տարի առաջ Ղազախստանում հիմնադրվեց Բալխաշ-Կել Մեսյան արգելանոցը: Դա գտնվում է Արալյան ծովի հյուսիսում՝ Պլոշ կղզու վրա: Արգելանոցում պահպանում և ուսումնասիրում են տափաստանային բուսական ու կենդանական աշխարհը: Այնտեղ անեցնում են կենդանիների ու բույսերի նոր տեսակներ:

16 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 1911 թ.

48 տարի առաջ, մարդկության պատմության մեջ առաջին անգամ, նորվեգական նշանավոր ճանապարհորդ Ռ. Ամունդսենն իր չորս ուղեկիցների հետ միասին հասավ Հարավային Բևեռ:

19 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 1741 թ.

Մահացավ Վիտուս Բերինգը, որը ղեկավարել է Կամչատկան ուսումնասիրող առաջին և երկ-







Ն  ՕՐԱՑՈՒՅՑ



րորդ արշավախմբերը։ Նա նավարկել է Ասիան Ամերիկայից բաժանող նեղուցի հարավային մասով, հասել հյուսիս-արևմտյան Ամերիկայի ափերը, ապա վերադարձին Կամչատկայի մոտ իր հայտնաբերած կղզիներից մեկում լնդախտ հիվանդությունից մահացել։

Այդ կղզին, ինչպես նաև Ասիան Ամերիկայից բաժանող նեղուցը հետագայում կոչվեց Բերինգի անունով։

19 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 1912 թ.

47 տարի առաջ մահացավ ռուս ականավոր բուսաբան և աշխարհագրագետ Ա. Ն. Կրասնովը։ Նա հետազոտել է Ռուսաստանի շատ շրջաններ, օրինակ՝ Ղրիմը, Կովկասը, Ալթայը, Տյան-Շանը, Սախալինը։ Ճանապարհորդել է Ճապոնիայում, Չինաստանում, Ճավայում, Հնդկաստանում, Ցեյլոնում, Եգիպտոսում, Հյուսիսային Ամերիկայում։

1912 թվականին Կրասնովը հիմնադրեց Բաթումիի հռչակավոր բուսաբանական այգին։

Կրասնովն աշխարհագրական փայլուն նկարագրությունների մեծ վարպետ էր։

21 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 1950 թ.

Մահացավ սովետական մեծ աշխարհագրագետ Լև Սեմյոնովիչ Բերգը (ծնվ. 1876 թ)։

Բերգը հայտնի է Միջին Ասիայում, Արալյան ծովում, Բալխաշ և Իսիկ-Կուլ լճերում կատարած իր հետազոտություններով։

Մեծ են Բերգի ծառայությունները աշխարհագրության և բնագիտության ասպարեզում։

1940 թվականից մինչև իր մահվան օրը Բերգը եղել է ՍՍՌՄ Աշխարհագրական ընկերության նախագահը։





29 ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 1699 թ.

260 տարի առաջ Պետրոս առաջինը հրաման տվեց՝ Ռուսաստանում անցնելու Եվրոպայում ընդունված տարեգրությանը, որն սկսվում է Քրիստոսի ծննդից։ Մինչ այդ, Ռուսաստանում տարեգրությունը սկսվում էր այսպես կոչված «աշխարհի ստեղծման օրից»։ Պետրոս 1-ի հրամանով 7208 թվականին հաջորդեց 1700 թվականի հունվարի 1-ը։





Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ





## ՀԱՅՈՑ ՁՈՐԸ

*Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

Անդունդնե՛ր կան Հայոց ձորում,
Որտեղ նայել չես կարող.
Ծաղիկնե՛ր կան հազարանուն՝
Հոգին դյութող ու գերող:

Անդունդներում ինչպես վիշապ
Արփա գետն է գալարվում.
Անեղ թափից քար ու քարափ
Սասանում են, գլորվում:

Շուրջը լեռներն են բոլորում՝
Մեխված ձեղունը երկնի,
Ուր արծիվն է լոկ ծվարում՝
Գլխին ամպերն հովանի:

Նայում ես, ու հսկա ժայռեր
Ասես թափվում են վերից.
Բայց կանգնած են դար ու դարեր
Ու չեն շարժվում տեղերից:

Աղբյուրնե՛ր կան փուլալ ու պաղ՝
Հայելիներ աստղերի.
Մատդ դնես ջրում մի պահ,
Դանակի պես կկտրի:

Ինչե՛ր չկան Հայոց ձորում.
Գեթ մի անգամ թե գնաս,
Չես մոռանա դու քո օրում.
Հավերժ դյութված կմնաս...

## ԽՈՍՐՈՎԻ ԱՆՏԱՌԸ

*Վեդիի շրջանային կենտրոնից 15 կիլոմետր դեպի հյուսիս-արևելք, անդնդախոր ձորերում ու սրածայր ժայռերի լանջերին փռված է Խոսրովի հնագույն անտառը: Ըստ ավանդության, այս անտառը 4-րդ դարի կեսերին տնկել է տվել հայոց Խոսրով 2-րդ Թագավորը և դարձրել իր որսատեղին:*

*Մայրթախիտ անտառով հոսող բազմաթիվ սրընթաց գետակները, շառաչուն ջրվեժները, ստորոտի աղբյուրները անտառին հեքիաթային գեղեցկություն են տալիս:*

*Այսօր էլ այնտեղ ծաղկում է վայրի նշենին, բուրում կապույտ մանուշակը:*

*Անտառում բնակվում են արջեր, վարազներ, լուսաններ, ընձառյուծներ, վայրի վիթեր, քարայծեր:*



## ՏԱՐՕՐԻՆԱԿ ԾԱՌԸ

*Բորնեո կղզում աճող այս ծառի արմատները գետնից բարձրանում են ավելի քան 20 մետր, որից հետո նոր սկսվում է ծառի բունը:*

## ԶԵՆԻԹ

*Զենիթ է կոչված երկնակամարի ամենաբարձր կետը:*

*Զենիթ են ասում ոչ միայն հայերենում, այլև ռուսերենում, ֆրանսերենում, անգլերենում, գերմաներենում:*

*«Զենիթ» բառը սխալ արտագրության հետաքրքիր օրինակ է: Այս բառի ծագումը արաբական է: Սակայն արաբական լեզվում երկնակամարի ամենաբարձր կետը կոչվում է ոչ թե «զենիթ», այլ «զամթ»: Հենց այդ արաբական բառը լատիներեն տառերով գրեցին «Zamt», սակայն կրթություն ունեցող արտագրողներին այդ բառը անսովոր թվաց: Նրանց կարծիքով այդպես չէր գրված, և նախավերջին տառը ոչ թե «m» պետք է լինի, այլ՝ «ni»: Եվ «Zamt» բառը դարձավ «Zanit» (զանիթ): Հետագայում «զանիթ»-ը դարձավ «զենիթ» և սկսեց ճանապարհորդել բոլոր երկրներում և բոլոր ժողովուրդների մեջ:*

# Գրքերի ԱՇԽԱՐՀՈՒՄ

## ԽԻԶԱԽ ԲԺԻՇԿԸ

1952 թվականի նոյեմբերին, Ատլանտյան օվկիանոսում անգլիական նավաստիները նկատեցին ալիքների մեջ լողացող մի նավակ: Երբ մոտեցան նավակին, նրանց զարմանքին չափ ու սահման չկար: Փոքրիկ ռետինե մակույկից նրանց ողջունեց մի երիտասարդ մարդ:

— Որտե՞ղ եմ ես, աշխարհագրական ո՞ր լայնության վրա, — հարցրեց անծանոթը:

Նրան շատ նավ բարձրացրին: Կապիտանը առաջարկեց հանգստանալ և ճաշել, բայց անծանոթը նորից հարցրեց.

— Ասացեք խնդրեմ, պատա-



ցից մինչև Անտիլյան կղզիներն ինչքա՞ն կլինի:

— 700 մղոն, — պատասխանեց կապիտանը:

— Այդ դեպքում ինձ նորից օվկիանոս իջեցրեք, ես պետք է շարունակեմ իմ ճանապարհը:

Նավաստիները նորից զարմացան, կարծելով անծանոթը կատակում է: Բայց երբ նայեցին նրա համառ դեմքին, հասկացան, որ նրանց դիմաց կանգնած է մեծ կամքի տեր մի մարդ:

Ո՞վ էր այդ անծանոթը և ինչու էր մեն-մենակ լողում անծայրածիր օվկիանոսում:

Մարդը վաղուց է իրեն ենթարկել բնության ամենաուժեղ հակառակորդներից մեկին՝ օվկիանոսին: Սակայն այդ տարերքի հրեշը ամեն տարի կլանում է 50.000-ից ավելի դժբախտ նավաբեկյալների, որոնք աղետի մատնված, իրենց փոքրիկ մակույկներով փորձում են ազատվել:

Ֆրանսիացի երիտասարդ բժիշկ Ալեն Բոմբարը մանրամասն ուսումնասիրելով նավաբեկյալների կորստի պատճառները, եկավ այն եզրակացության, որ նրանք բաց ծովում մեռնում են ոչ թե քաղցից ու ծարավից, այլ... հուսահատությունից: «Եթե մարդ այնքան կամքի ուժ ունենա, որ չվախենա ծովի արհավիրքներից և չհուսահատվի, ապա նա երբեք չի մեռնի: Չէ՞ որ ծովը հարուստ է ձկներով, և հետո ծովի ջուրը չնայած աղի է, բայց կարելի է գդալով օգտագործել»: Այսպես էր մտածում երիտասարդ բժիշկը:

Սակայն ենթադրությունը դեռ գիտություն չէ: Այդ բոլորը պետք էր գործնականորեն ապացուցել:

Եվ ահա բժիշկ Ալեն Բոմբարը, 1952 թվականին, «Հերետիկոս» կոչվող ռետինե փչովի նավակով մենակ դուրս եկավ օվկիանոս, որպես կամավոր նավաբեկյալ:

Նա 65 օրում իր մակույկով կտրեց անցավ Ատլանտյան օվկիանոսը, սնվելով միայն ծովի ջրով, ձկներով ու պլանկտոններով (միկրոսկոպիկ փոքրիկ կենդանիների կծիկ), որոնք հարուստ են վիտամիններով:

Նա ծովում շատ տանջվեց, բայց շնորհիվ իր մեծ կամքի, հաղթեց օվկիանոսին:

Ահա այդ մասին է պատմում բժիշկ Ալեն Բոմբարի «Կամավոր նավաբեկյալ» հետաքրքիր գիրքը:

Թ. ՄՈՎՍԻՍՅԱՆ
(Բժշկական գիտությունների թեկնածու)

## ԴԱՐԱՎՈՐ ԱՌԵՂԾՎԱԾՆԵՐ

Լույս տեսավ Ե. Անդրեևայի «Դարավոր առեղծվածներ» հետաքրքիր գիրքը: Հեղինակը պատանի ընթերցողին ծանոթացնում է երկրի կեղևի զարգացման, օվկիանոսների, մայր ցամաքների ծագման հարցերին: Ամեն տարի տարբեր երկրներից շատ սառցահատ նավեր, ինքնաթիռներ, սուզանավեր խիզախ ճանապարհորդություններ են կատարում դեպի բևեռներն ու օվկիանոսների խորքերը, հայտնաբերում նոր կղզիներ, որոնք ժամանակի ընթացքում եղել են մարդաբնակ:

Ինչքա՜ն լավ կլինի օվկիանոսների և ծովերի խորքում թաքնված գանձերը հայտնաբերել և մարդկության համար օգտագործել:

Կարդալով գիրքը, մենք իմանում ենք, որ ծովերն ու օվկիանոսները բարձրանում և իջնում են: Եղել են դեպքեր, երբ բազմաթիվ ցամաքային տարածություններ ծածկվել են ջրի տակ: Օրինակ, Բալթիկ ծովը ֆինլանդական ափերի մոտ հազար տարվա ընթացքում երկու մետր բարձրացել է: Տիբերյան ծովում Պալմարա կղզին 70 տարում բարձրացել է 64 մետր:

Առանձին հետաքրքրություն է ներկայացնում հրաբուխների և ջրհեղեղների բաժինը: Հրաբուխները կործանել են շատ քաղաքներ և գյուղեր: Իսկ 1932 թվականի գարնանը Միսսուրի և Միսիսիպի գետերի վարարումից ջրի տակ են անցել ամերիկյան 50 քաղաք ու բազմաթիվ գյուղեր:

Այս գրքից իմանում ենք, թե ինչպիսի կյանքով են անցել մեր նախնիները: Հեղինակը գրում է. «Պերուում, Ինկերի հին թագավորության մեջ, Արևի տաճարի կողքին, Գուատանա գետի մոտ կար մի զարմանալի այգի, որը առվակներով լցնում էր գետի ջուրը: Այդ այգում ամեն ինչ պատրաստված էր տարբեր մետաղներից՝ զարմանալի նրբությամբ: Այգու յուրաքանչյուր առվակը զարդարված էր տարբեր գույնի մետաղներից պատրաստված վառ սաղարթներով, պտուղներով ու երևակայական ծաղիկներով: Երկար, ոսկե բեղիկներով թիթեռները նստած էին ծաղիկների վրա, տարօրինակ թռչունները օրորվում էին արծաթյա ծառերի ճյուղերին, ճկուն օձերը և մողեսները սողում էին արծաթե խոտ խոտերի մեջ... Կային նաև ոսկուց պատրաստված եգիպտացորենի պլանտացիաներ»:



Շատ տարիներ մարդիկ մտահոգված են եղել օվկիանոսների և ծովերի հատակը չափելու հնարքներ որոնելով: Հետաքրքիր է, որ ծովի խորությունը չափելու առաջին գործիքը հորինել է Պետրոս I-ը: Ինչպես հայտնի է, ջրում ձայնը տարածվում է հինգ անգամ ավելի արագ, քան օդում (վայրկյանում 1500 մետր): Լողացող նավերն իրենց ընթացքի ժամանակ հնչաութային կատարում են այդ շատ կարևոր աշխատանքը: Ընթերցողը գրքի էջերում ծանոթանալով անցյալի պատմությանը, միաժամանակ տեսնում է, թե ինչպիսի հսկայական քայլերով են զարգացել ներկայիս գիտությունն ու տեխնիկան:

Ովքեր ցանկություն ունեն ապագայում դառնալու երկրաբաններ, ծովագնացներ, բևեռախույզներ, պատմաբաններ, այս գրքում կգտնեն շատ ուսանելի բաներ:

Հ. ՇԻՐԱԶՅԱՆ



**ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ**



Շապիկը՝ Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Համարի կոնսուլտանտ՝ Ա. ՕՀԱՆՅԱՆ


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ





„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41. Հեռախոսներ՝ 2-41-83, 2-39-06:

ՎՖ 08979. Պատվեր 1257: Տպաքանակ 5600: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 13 XII 1959 թ. ՀՍՍՀ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆհրատի տպարան, Երևան, Տերյան 91:







## Աշխարհագրական ԽԱՉԲԱՌ



ՈՒՂՂԱՀԱՅԱՑ—1. Գիտություն, 4. պատմական քաղաք Հայաստանում, 5. Հայաստանի երիտասարդ քաղաքներից, 6. գետակ, որ սկիզբ է առնում Փամբակի լեռնաշղթայից, 8. անապատային երևույթ, երբ հորիզոնից դուրս գտնվող առարկաները արտացոլվում են օդում՝ շրջված տեսքով, 11. գետ Եվրոպայում, 13. ՍՍՌՄ-ի հարավային սահմանով հոսող գետ, 15. գիշատիչ թռչուն, 17. գետ Ղազախստանում, 19. պետություն, 21. Ասիայի խոշոր գետերից, 22. թռչուն, որ գիշերներն է որսի դուրս գալիս, 24. մոլորակ:

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ—2. Իրտիշի վտակներից, 3. 500 հոգուց բաղկացած մի ցեղ, որ բնակվում է Հնդկաստանի ու Տիբեթի սահմանի մոտ, 4. ձյան վրայով սահելու հարմարանք, 7. լիճ Կանադայի հարավ-արևելքում, 9. գետ Կովկասում, 10. շրջանային կենտրոն Հայաստանում, 12. Վոլգայի վտակներից, 14. Ասիական պետության մայրաքաղաք, 16. ջրային ընդարձակ տարածություն, 18. ազգություն, 20. գետ ՍՍՌՄ-ի եվրոպական մասում, 23. գետ, որի մեջ զոհվեց քաղաքացիական կռիվների լեգենդար հերոս Չապաևը, 25. թանկարժեք քար:

*Կազմեց Ա. ՄԻՐԶՈՅԱՆ*

### ՔՈ ՀԱՅՐԵՆԻՔՈՒՄ



Ի՞նչ անունով է հայտնի այս լիճը, որտե՞ղ է գտնվում և ծովի մակերևույթից քանի՞ մետր բարձրության վրա: Ի՞նչ լեռներ են շրջապատում լիճը: Ի՞նչ ձկներ կան այնտեղ: Պատմական ինչպիսի՞ իրադարձություն է կապված այս լճի հետ և ո՞ր նշանավոր գրողի ստեղծագործության մեջ է պատկերված այն: Քանի՞ գետ է թափվում այս լիճը: Ի՞նչ հիդրոկայաններ են կառուցված լճից սկիզբ առնող միակ գետի վրա և այժմ ո՞րն է կառուցվում: Քանի՞ շրջանի հողեր է ոռոգում այդ գետը և որտե՞ղ է թափվում: Ի՞նչ ջրանցքներ է կառուցված այդ գետի ջրերով և ո՞ր մեծ ջրանցքն է այժմ կառուցվում:




### ՔԱՐՏԵԶԻ ԱՌԱՋ

Ո՞ր գետն է սա: Ինչպե՞ս են կոչվում թվերով նշանակված քաղաքները:



«Պիոների» հավելված
հոկտեմբերիկների համար

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

# Կարմիր սահնակը

Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ



Մի գիշերվա մեջ այնքան ձյուն էր եկել, որ երբ Արևիկը լուսամուտից դուրս նայեց, վախեցավ։

— Վա՜յ, տատիկ, մեր փողոցը կորել է։

— Փողոցը չի կորել, Թոռնիկս,— ասաց տատը,— փողոցն իր տեղն է մնացել։ Այդ ձյունն է նրան ծածկել։ Հիմա մանկապարտեզ կգնանք, կտեսնես։

Քիչ հետո տատը խոհանոցից մի սահնակ բերեց։

— Հայրիկն է գնել,— ասաց տատիկը,— տե՛ս...



Արևիկը շատ ուրախացավ։

— Ինչ լավն է, ինչ կարմիր է, տատիկ ջան,— և պտտվեց սահնակի շուրջը, շոշափեց կողերն ու մետաղյա փայլուն ժապավենը, որ գործարանի քեռիները փակցրել էին լավ սահելու համար։

Արևիկը վերցրեց իր նոր սահնակը և տատիկի հետ գնաց մանկապարտեզ։

— Երեխանե՛ր,— ձայն տվեց շեկլիկ





Սեթը,—Արևիկի համար նոր սահնակ են գնել։

Երեխաները շրջապատեցին սահնակը։

Ինչ լավն է, չէ՞, Շուշիկ։

Ճաշից հետո երեխաները վերցրին սահնակներն ու բակ դուրս եկան։

— Վա՜յ, մեր ձյունն ու՞ր է, ձյուն չկա,— ձայն տվին երեխաները,—ձյունը հալվել է, էլ ինչպե՞ս ենք սղղալու։

— Ոչ, ձյունը չի հալվել, այդ Վահան պապն է հավաքել ու ձնե բլուր պատրաստել,—ասաց ընկեր Նորան,— գնանք սղղալու։— Ու՜հ, ինչ բլրակ է, սպիտակ, բարձր, առաջինը ես եմ սղղալու,—ասաց Սեթն ու սահնակն առնելով բարձրացավ բլրի գագաթը։

— Ճանապա՜րհ, ճանապա՜րհ, եկա...

Հետո նա սահնակն Աննային տվեց ու սպասեց իր հերթին։

Բլրակից սղղում ու սահնակներն իրենց ընկերներին տալով հերթի էին սպասում նաև մյուսները։ Միայն Արևիկը չէր իջնում սահնակից։

— Արևիկ, այ Արևիկ, սահնակդ տուր մի անգամ սղղամ, հա՞,— խնդրեց Գայանեն։

— Բա որ փչանա՞... հայրիկս ինձ համար է գնել, ես էլ մենակ կխաղամ։

Ես չեմ փչացնի, Արև ջան, ես շատ զգույշ եմ, ուզու՞մ ես, մայրիկիս հարցրու,— խնդրեց Թամարը։

— Մենք էլ ենք զգույշ, Արևիկ, մենք շատ զգույշ ենք։

— Ես մեր բաժակները չեմ ջարդում։

— Իսկ ես... իսկ ես...

Բայց Արևիկը պինդ բռնած սահնակի կապից, ոչ ոքի չէր տալիս։

Տեսան, որ սահնակը չի տալիս, էլ չխնդրեցին։



— Ձի տալիս, թող չտա, մեր սահնակներով կսղղանք, — ասացին նրանք ու հեռացան։

Հանկարծ Լիլիթը ձայն տվեց երեխաներին.

— Հիմա էլ եկեք «գնացք-գնացք» խաղանք, ես շոգեքարշը կլինեմ. տո՛ւ տո՛ւ-տո՜ւ։

— Մենք էլ վագոններ կլինենք. չո՛ւ-չո՛ւ-չո՛ւ, — կանչեցին երեխաներն ու քարշ տվին սահնակները։ — Մե՛կ, ե՛րկու, երե՛ք, չո՛ւ, ու՜հ, ինչ շատ են...

«Գնացքը» վազեց բակով, իսկ ընկեր Նորան թափահարեց Սեթի կանաչ շարֆը։

— Բարի՜ ճանապա՜րհ, բարի ճանապա՜րհ...

Հանկարծ լացի ձայն լսվեց։ Արեւիկն էր։ Նա նստել էր սահնակին ու լաց էր լինում. «Ես էլ եմ ուզում խաղալ, ես էլ եմ ուզո՜ւմ...»



Նկ. Կ. ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆԻ

## ՆՈՐ ՏԱՐԻ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈՒԼՑՅԱՆ

Եկավ, եկավ մեր պապին,
Նվերները շալակին,
Ոտքից-գլուխ ձյունի մեջ,
Մորուքն երկար, քուրքը՝ մեծ։

— Պապի, բարով ես եկել։
— Պապի, մեզ ի՞նչ ես բերել։
— Ես ի՞նչ «պապի», մանուկնե՛ր,
Պատանի եմ ես էլ դեռ։

Այս ձմեռն է ինձ զուգել,
Ես ցրտից եմ քուրք հագել։
Հենց որ նորից գարուն գա,
Մորուքս ջուր կդառնա։

— Երեխանե՛ր, «գնացքը» կանգնեցրեք, «վագոնն» անջատվել է, կանգնեցրեք...

— Փո՛ւհ փու՜հ, — փնչաց «շոգեքարշ» Լիլիթն ու կանգ առավ։

— Չո՛ւ-չու՜-չո՜ւ, — չխչխկացին «վագոններն» ու նույնպես կանգ առան։

Ձյունը հանդարտ շարունակում էր թափվել։

Ձյան սպիտակ, փափուկ փաթիլները կպչում էին երեխաների թերթերունքներին, նստում ուսերի վրա ու խճճվում մուշտակի մազերի մեջ, բայց ոչ ոք խաղը թողնել չէր ուզում։

— Տո՛ւ-տո՛ւ-տո՜ւ, — ճչում էր «շոգեքարշը»։

— Չո՛ւ-չու-չո՛ւ, — չխչխկում էին «վագոնները»։

«Գնացքի» առջեւից գնում էր կարմիր սահնակը։

Արեւիկն ընկերների հետ ձգում էր «գնացքն» ու բոլորից բարձր ծիծաղում։

Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ




Շուտով աշխարհին ձմեռ կիջնի խոր,
Փոքրիկ շլդիկին շոր է հարկավոր...
Միտք արեց մայրիկն ու ճարը գտավ,
Իր ծանոթ ոզնու խանութը մտավ։
— Վարպետ ջան, վարպետ, կարիր
մի տաք շոր,

Փոքրիկ շլդիկս չմնա տկլոր։
— Ինչպիսի՞ն կուզես, քույրիկ ջան, կարեմ։

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Կարիր այնպիսին, որ դուր գա իրեն։
Նա շատ է սիրում գրպաններ մեծ-մեծ,
Որ ինչ պատահի լցնի նրանց մեջ,
Մատիտներ, դանակ,
Հաց ու կարկանդակ,
Լուցկիներ, խարտոց,
Կոճակներ, ձեռնոց,
Շղթա ու խցան,
Հոլ, թել ու աքցան,



Եգիպտացորեն,
Ինչ դուր գա իրեն։
Ոզնին բարկացավ, փշերը ցցեց
Ու այս խոսքերով ճանապարհ դրեց։
— Շատ հին վարպետ եմ, բայց մինչև այսօր
Չեմ կարել երբեք այդպիսի մի շոր...
Մայր նապաստակը շրջեց, շատ շրջեց,
Վերջն էլ հուսահատ տան ճամփան բռնեց։
Ամբողջ աշխարհում մի դերձակ չկար,
Որ շորեր կարեր շլդիկի համար։

Շուտով աշխարհին ձմեռ կիջնի խոր,
Ինչու՞ է, ասեք, շլդիկը տկլոր...



# ՄԱՅՐԻԿԻ ՀԱՇԻՎԸ

Փ. Ք. ԱԹՐԵ
(Հնդիկ գրող)

Նկ. Ռ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

Դինու անունով հնդիկ մի տղա կար։ Նա տաս տարեկան էր։ Հայրը բժիշկ էր։ Դինուն նստում էր հոր բուժարանում և դիտում, թե նա ինչպես է դեղ տալիս հիվանդներին և հաշիվներ գրում։ Մի օր նա հարցրեց հորը.

— Հայրիկ, ի՞նչ բան է հաշիվը։

Հայրը մի այսպիսի հաշիվ ցույց տվեց նրան.



| Հիվանդի անունը | Ս. Ա. Ջոն |
|---|---|
| 1. Երկու այցելության համար | 6 ռուփի |
| 2. Երեք սրսկում | 9 —»— |
| 3. Դեղերի արժեքը | 5 —»— |
| Ընդհանուր գումարը | 20 ռուփի |

Հաշիվը Դինուին շատ դուր եկավ։ Ամբողջ օրը նա այդ մասին մտածեց։

Հաջորդ օրը մայրը հիվանդ էր։ Ուստի Դինուն արեց տան գործերը. կաթսաները մաքրեց, փոքր եղբորը հոգ տարավ, հետո էլ շուկա գնաց։ Գիշերը նա միտք արեց, ինչու չպատրաստի մոր համար արած ծառայությունների հաշիվը։ Եվ ահա, մի թերթ թուղթ վերցրեց ու գրեց հետևյալ հաշիվը.



| Մայրիկը պարտք է | |
|---|---|
| 1. Կաթսաները մաքրելու համար | 1 ռուփի |
| 2. Փոքր եղբորս հոգ տանելու համար | 2 —»— |
| 3. Շուկա գնալու համար | 1 —»— |
| Ընդհանուր գումարը | 4 ռուփի |

Նա այս հաշիվն անշշուկ գրեց մոր բարձի վրա։ Հաջորդ առավոտ, Դինուն անկողնու մոտ չորս ռուփի գտավ։ Ինչքա՜ն երջանիկ էր, որ մայրը վճարել էր հաշիվը։ Բայց մայրն էլ մի ուրիշ հաշիվ էր գրել Դինուի համար։ Սա վերցրեց ու կարդաց.

| Դինուն պարտք է՛ | |
|---|---|
| 1. Մանկուց խնամելու համար | Ոչինչ |
| 2. Հիվանդությունների ժամանակ անցկացրած անքուն գիշերների համար | Ոչինչ |
| 3. Խենթ ու խելառ արարքների համար | Ոչինչ |
| Ընդհանուր գումարը | Ոչինչ |

Դինուի աչքերը արցունքով լցվեցին։ Նա մոր մոտ վազեց ու գրկեց նրան։

— Մայրիկ ջան, խնդրում եմ, ներիր, որ այդպիսի հաշիվ եմ գրել,— գոչեց Դինուն խեղդված ձայնով և չորս ռուփին վերադարձրեց մորը։

— Հենց հիմա իմ հաշիվն էլ փակվեց,— պատասխանեց մայրը համբուրելով Դինուին։

Անգլերենից թարգմ.

ՀՐԱՉ ԲՈՒՋԻԿԱՆՅԱՆ



Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ




Անապատում այս անջուր
Նա՞վ է լողում, թե բլուր...
Չէ, ուղտ է, ուղտ նոնուան,
Հապա նայիր դու նրան.



Բուրդ ունի նա ոսկեգույն,
Ականջները՝ ծտի բույն։
Պոչը մի թիզ, վիզը կեռ,
Մեջքի վրա՝ երկու լեռ,
Թաթերը մեծ ու կլոր,
Փափուկ, ինչպես թթխմոր։
Քայլում է նա շատ դանդաղ,
Գլուխը վեր, շուրթը կախ,
Եվ զգույշ է շարունակ,
Ասես ձու կա ոտքի տակ։
Բայց շատակեր չկարծես,
Նա չի ուտում փղի պես.
Փշով-մշով կշտանում,
Օրերով բեռ է տանում,
Եվ ճամփեքին՝ տապ ու չոր,
Չի ծարավում հինգ-վեց օր։
Ափսոս շատ է անճոռնի,
Բայց ինչ լավ է՝ թամբ ունի,
Սանդուղք բերեմ, բարձրանամ,
Նստեմ վրան ու գնամ։

Նկ. Ս. ԱԶԻԶՅԱՆԻ



Ինչքան էլ կոճակը հալածվելով փախավ ահեղ ավելի առջևից, բայց էլի ավելը հասավ նրան ու քշեց, խառնեց աղբակույտին։ Հետո նա այնպես հրեց կոճակին, որ սա դուրս թռավ դռնից, զարկվեց ինչ-որ բանի ու գլորվեց ընկավ մի մութ տեղ։ Ուշքի գալով նա տեսավ, որ գտնվում է պատշգամբի տախտակամածի ճեղքում։ «Այստեղ այնքան էլ վատ չէ,— մտածեց կոճակը,— լավ էր չընկա աղբակույտը»։

Կոճակն այսպես մեն-մենակ ընկած մնաց մի օր, երկու օր, իսկ երրորդ օրը նրա մոտ ընկավ մի արծաթե դրամ։

—Բարև,— ասաց կոճակը դրամին,— դու՞ ինչպես ընկար այստեղ։

— Ես թաշկինակի հետ գրպանում էի։



Երբ թաշկինակը հանեցին, ես նրա հետ դուրս թռա ու գլորվեցի ընկա այս սարսափելի փոսը։

—Ոչի՜նչ, մի՛ տխրիր, ասաց կոճակը,— այստեղ այնքան էլ սարսափելի չէ։ Ա՛յ, նայիր, այստեղից երևում են և՛ երկինքը, և՛ լեռնագագաթները, բացի այդ, մենք միասին կլինենք, չենք տխրի։

—Ի՞նչ ես խոսում, հիմար կոճակ,— մռայլվեց արծաթե դրամը,— չէ՞ որ ես սովոր չեմ երկար ժամանակ մի տեղում ընկած մնալու։ Ես իմ ամբողջ կյանքում թափառել եմ ձեռքից ձեռք, գրպանից

# Դրամը

Գ. ՖԻԼՈՅԱՆ

գրպան, պայուսակից պայուսակ, գանձարկղից գանձարկղ։ Ես տասնյակ անգամ եղել եմ պետբանկում։ Քեզ ի՞նչ կա որ. դու կարող ես ամբողջ տարին կուչ գալ այս ճեղքի մեջ և ուրախ լինել նրանով, որ մի կտոր երկինք ես տեսնում և մի քանի լեռնագագաթ։ Այդ նրանից է, որ դու քո կյանքում ոչինչ չես տեսել։

— Այդ ո՞վ ոչինչ չի տեսել,— պատասխանեց կոճակը։ — Ա՛յ, տեսնո՞ւմ ես վրայիս թասը։ Ես զինվորական վերնաշապկի կոճակ եմ։ Ես եղել եմ ռազմաճակատում, նստել եմ խրամատներում, եղել թշնամու թիկունքում, տանկ եմ նստել, թռել եմ պարաշյուտով։ Իսկ երբ իմ տերը թշնամուն հաղթեց և վերադարձավ ռազմաճակատից, նա ինձ հետ հաճախ որսի էր գնում։ Մի անգամ քիչ մնաց ճահիճը խրվեինք։ Իսկ դու ասում ես թե՝ բան չես տեսել։



— Գուցե և տեսել ես, բայց ոչ ինձանից շատ։

— Ձե՛, ավելին եմ տեսել։

Գուցե նրանք դեռ երկար վիճեին, եթե հանկարծ նրանց մոտ չընկներ մի գրչածայր։

— Դո՞ւ ով ես,— հարցրեց դրամը։

— Ես գրչածայր եմ։

— Դու ինչացո՞ւ ես։

— Օ՜, ես շատ կարևոր գրենական պիտույք եմ։

— Ինչո՞վ ես կարևոր։

— Ես գրում էի։ Ես շատ օգտակար էի, բայց ամեն անգամ պետք թրջվեի թանաքամանի մեջ և ահա, ցավոք սրտի, հայտնվեցին ինքնահոս գրիչները, որոնք թանաքամանի կարիք չեն զգում։ Իսկ ինձ դուրս վռնդեցին։

Այսպես, ճեղքի մեջ ապրեցին կոճակը, արծաթե դրամը և գրչածայրը։ Այժմ արդեն երեքով էին և այնքան էլ չէին ձանձրանա։ Նրանք զրույց էին անում, պատմում իրենց լավ ու վատ օրերից։

— Զէ, այստեղ մենք բոլորս կկորչենք,— ասաց զիլաուն գրչածայրը.— ժանգով ու փոշով կծածկվենք։

— Ես երբեք չեմ ժանգոտի,— ասաց դրամը,— չէ՞ որ ես արծաթից եմ և ձեզանից ամենից արժեքավորը։

— Եկեք չխոսենք այդ մասին,— ասաց գրչածայրը.— ինձ գնելիս տերս վճարեց հարյուր հատ քեզ նման արծաթե դրամ։

— Թեև ես արծաթից չեմ,— հպարտացավ կոճակը, բայց ես էլ չեմ ժանգոտում,



*որովհետև ես ներկված եմ, իսկ ինձ համար վճարել են տասը հատ քեզ նման արծաթե դրամ։*

*Արծաթե դրամն ուզում էր առարկել, բայց այդ ժամանակ ճեղքն ընկավ գնդլիկ սիսեռը։*

*— Դու ի՞նչ բան ես,— հարցրին բոլորը միաբերան։*

*— Ես բան չեմ, ես պարզապես սիսեռ եմ։*

*— Իսկ ի՞նչ էիր անում մինչև այստեղ ընկնելը։*

*— Ես ոչինչ չէի անում։*

*— Սիսեռ, դու հիմար-հիմար դուրս ես տալիս,— ասաց գրիչը,— ամեն ոք իր դերն ունի։ Քեզ ինչի՞ համար են պատրաստել։*

*— Ինձ չեն պատրաստել, ես պարզապես բուսնել եմ։*

*— Չեմ հասկանում, թե ինչպե՞ս ես դու բուսնել, եթե քեզ չեն պատրաստել։*

*— Էհ, քեզ հետ չարժի խոսել,— ասաց արծաթե դրամը,— մի՞թե դուք չեք տեսնում, որ նա տխմարի մեկն է։*

*— Դրամը ճիշտ է ասում, նրա հետ չարժի խոսել,— հաստատեց գրչածայրը։*

*Եվ բոլորը նրան արհամարհեցին, թողին մեն-մենակ ու սկսեցին իրար հետ զրույց անել։ Իսկ խեղճ սիսեռը կուչ եկավ ու լռեց։*

*— Տեսե՛ք, տեսե՛ք,— մի շաբաթ հետո ձայն տվեց կոճակը,— մեր հիմար սիսեռը ոտքի է կանգնել ու վեր է բարձրանում։*

*— Դրան տես, ճեղքից դուրս է սողում,— նախանձով ասաց արծաթե դրամը։*

*Եվ իրոք, սիսեռը բարձրացավ-բարձրացավ, ու մի գեղեցիկ օր էլ նա իր գլուխը, որ զարդել էր երկու նուրբ ու կանաչ թերթիկներ, դուրս հանեց ճեղքից և սկսեց ավելի ու ավելի բարձրանալ։*

*— Այ, տեսնո՞ւմ եք,— ասաց նա ճեղքի բնակիչներին,— դուք ծիծաղում էիք ինձ վրա, չէիք հավատում, որ ես բուսնել եմ, տխմար էիք անվանում, և ահա ես նորից եմ բուսնել, իսկ դուք ընկած կմնաք այս ճեղքում և ավելի կժանգոտեք։*

*— Ես չեմ ժանգոտում, ես արծաթից եմ,— ասաց դրամը։*

*— Ես էլ չեմ ժանգոտի, ես ներկված եմ,— ասաց կոճակը։ Բայց սիսեռը այլևս նրանց չէր լսում։ Նա կանգնել էր նուրբ ու սլացիկ ոտքին, երջանիկ նայում էր իր շուրջը, վայելելով մաքուր օդն ու արևի պայծառ լույսը։*

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ



# Ագռավ եղբայրներ

(Չինական հեքիաթ)

Հին բնի մեջ ապրում էին երկու ագռավ եղբայրներ։ Բույնը շատ հին էր, վաղուց սկսել էր քանդվել։

— Փոքր եղբայրս կնորոգի,— մտածեց մեծ ագռավ եղբայրը։

— Մեծ եղբայրս կնորոգի,— ասաց փոքր ագռավ եղբայրը։

Այդպես էլ չնորոգեցին նրանք իրենց բույնը։ Եկավ աշունը։ Սառը քամին փչեց։ Ագռավ եղբայրները մրսեցին։ Իսկ բույնը քանդվում էր։

— Հիմա արդեն փոքր եղբայրս կնորոգի անպայման,— մտածեց մեծ ագռավ եղբայրը։

Մեծ եղբայրս կնորոգի...

Եկավ ձմեռը։ Ամեն ինչ ծածկվեց ձյան տակ։ Ագռավ եղբայրները կուչ եկան հին բնի վրա.

— Կը՛ռ-կը՛ռ, ցուրտ է, կը՛ռ... Սառչում ենք, կը՛ռ։

Մեծ ագռավ եղբայրը մտածեց.

Եղբայրս փոքր է, ցրտի չի դիմանա, հիմա կնորոգի։

Իսկ փոքր ագռավ եղբայրը հույսը դնում էր մեծի վրա։ Այդպես էլ ոչ ոք չաշխատեց։ Իսկ հին բույնը քայքայվում էր ու քայքայվում։ Սառնամանիքը սաստկացավ։ Բուքը փչեց ուժեղ։ Թափվեցին հին բնի վերջին ճյուղերը։ Եվ ագռավ եղբայրները շուտով սառած ընկան ծառի տակ...

Թարգմ. Ս. ԴԱՅԱՆ



# ԱՐՋՈՒԿ ԲՈՒՄԻՆ ՈՒ ՀՈԼԸ

Բումին շատ էր սիրում հոլ խաղալ։ Մի անգամ նա թաքուն դուրս եկավ խաղալիքների արկղից, վերցրեց փոքրիկ պայուսակն ու գույնզգույն հոլը և գնաց պարտեզ։ Ոսկեգույն թելը փաթաթեց հոլին և ամբողջ ուժով բաց թողեց։ Հոլն սկսեց պտտվել։ Ուրախությունից Բումին վեր-վեր էր թռչում։ Հանկարծ





թելի ծայրը կպավ հոլին, և Բումին չտեսավ, թե ինչպես հոլը վեր թռավ ու անհայտացավ։ Ամեն տեղ նայեց, բայց հոլը չկար ու չկար։ Ծառի մոտ մի մանուշակ տեսավ։ Մոտեցավ նրան ու հարցրեց.

Հոտավետ մանուշակ, չտեսա՞ր ուր ընկավ իմ գույնզգույն հոլը։

— Ո՛չ, չեմ տեսել։ Բայց արի միասին փնտրենք։

Երկուսով դես նայեցին, դեն նայեցին՝ չգտան։ Տեսան ծառի





ճյուղին մի դեղնափորիկ ծիտիկ է նստած։

— Ծիտիկ քուչրիկ, չտեսա՞ր ուր ընկավ հոլը,— հարցրին նրան։

— Ո՛չ, չեմ տեսել,— ծլվլաց ծիտիկը,— եկեք երեքով փնտրենք։

Այդ ժամանակ նրանց մոտեցավ կատուն։



— Փիսիկ ջան, փիսիկ, չտեսա՞ր ուր ընկավ հոլը,— հարցրին նրան։





Կատուն օրորեց գլուխն ու մլավելով ասաց.

Ես էլ ձեզ հետ կգայի փնտրելու. բայց ամբողջ օրը մկների ետևից եմ վազվզել ու շատ եմ հոգնել։

Այս խոսքերի վրա եկավ հրշեջ խումբը։ Արջուկ Բումին, մանուշակը, ծիտիկն ու փիսիկը նստեցին մեքենան ու շարունակեցին ճանապարհը։ Մի քիչ տեղ էին գնացել, երբ մեկ էլ տեսան թռչկոտելով իրենց կողմն է գալիս մի կարմիր գնդակ։ Գնդակը ծիծաղում ու ցույց էր տալիս արջուկի վզից կախված պայուսակը։ Բումին նայեց պայուսակի մեջ և ինչ։ Իր գույնզգույն հոլը այնտեղ էր։ Նա շատ ուրախացավ և շնորհակալություն հայտնեց գնդակին, հրշեջ խմբին, փիսիկին, ծիտիկին ու մանուշակին՝ իրեն օգնելու համար։

Գերմաներենից փոխադրեց՝

Դ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ։



## ՍԻՐԵԼԻ ԵՐԵԽԱՆԵՐ

ԱՐԴԵՆ ԲԱՑՎԱԾ Է

## „ՊԻՈՆԵՐ"

ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳՐԻ
1960 ԹՎԱԿԱՆԻ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ։

*ԵԹԵ ՈՒԶՈՒՄ ԵՔ ԱՄԵՆ ԱՄԻՍ ՍՏԱՆԱԼ ՁԵՐ ՊԱՏԿԵՐԱԶԱՐԴ ԱՄՍԱԳԻՐԸ և ԿԱՐԴԱԼ ԱՅՆՏԵՂ ՏՊԱԳՐՎՈՂ ՊԱՏՄՎԱԾՔՆԵՐԸ, ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, ՀԵՔԻԱԹՆԵՐԸ, ԶՐՈՒՅՑՆԵՐԸ՝ ԳԻՏՈՒԹՅԱՆ և ՏԵԽՆԻԿԱՅԻ ՄԱՍԻՆ, ԵԹԵ ՈՒԶՈՒՄ ԵՔ ԼՈՒԾԵԼ «ԺԱՄԱՆՑԻ» ՀԵՏԱՔՐՔՐԱՇԱՐԺ ԽՆԴԻՐՆԵՐՆ ՈՒ ԱՌԱՋԱՐԿՆԵՐԸ, ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ «ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻՆ ՄԵԿ ՏԱՐՈՎ։ ՏԱՐԵԿԱՆ ԲԱԺՆԵԳԻՆՆ Է 24 ՌՈՒԲԼԻ։ ՇՏԱՊԵՑԵՔ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼ։*

ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ

